# ԽՈՍՔ ԵՐԱԽՏԻՔԻ

ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ



Մեր աղքատիկ գյուղը խավար
Նոր էր քիչ-քիչ լուսավորվում.
Դու գիտության լույս էիր վառ,
Ճրագ էիր այդ խավարում:

Ե՛վ ուսուցիչ էիր ճմուտ,
Ե՛վ դերասան, և՛ երաժիշտ:
Ցրում էր քո երգը անուշ
Եվ ամոքում ամեն մի վիշտ:

Ծանեցիր իմ մատաղ հոգում
Սերմեր լույսի ու բարության:
Ես քեզանի՛ց սովորեցի
Ուտանավոր գրել անգամ:

Դեռ հնչում են իմ ականջում
Քո ձայնն ու խոսքը դյութիչ:
Ուսուցի՛չ էլ եղա, բայց դու
Մնացիր միշտ ինձ ուսուցիչ:

# ԻՄ ԱՌԱՋԻՆ «ՀԻՆԳԸ» ՇԱՐԱԴՐՈՒԹՅՈՒՆԻՑ

ԷԼՄԻՐԱ ՍԱՐԳՍՅԱՆ

Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Մեր բակի Հովիկին ես չէի սիրում: Պատճառն այն էր, որ բոլորը շարունակ գովում էին նրան, թե՝ Հովիկի լուսանկարը միշտ փակցված է իրենց դպրոցի գերազանցիկների պատվո տախտակին, թե նա մասնակցել է «պատանի հետախույզների» արշավներին, թե նամակների միջոցով բարեկամացել է ուրիշ քաղաքներում ապրող պիոներների հետ, հյուր է գնում՝ նրանց, նրանց է հյուրընկալում իրենց դպրոցում և տանը...

Հովի՛կ, Հովի՛կ, Հովի՛կ...

Մի գլուխ Հովիկ... Կարծես թե բակում ուրիշ երեխա, ուրիշ դպրոցական չկար՝ նրանից բացի: Նա ինքն էլ էր լսում այդ գովեստները, գլուխը կախում, շիկնում: Պա՛h, տեսեք, տեսեք, ինչ համե՜ստն եմ, նեղվում եմ գովասանքներից:

Նրան գովելով, նույն մեծահասակները շարունակ նախատում էին մեզ՝ բակում խաղացողներիս.

— Հովիկի՛ց օրինակ վերցրեք. նա դպրոցում հետաքրքիր գործեր է կատարում, իսկ դուք առավոտից-իրիկուն անգործ թափառում եք:

— Միայն գնդակ են տշում, փոշոտվում,— ավելացնում էր մի ուրիշը:

Ես հարգում եմ մեծահասակներին, չեմ վիճում հետները, բայց այդ Հովիկի օրինակով ուղղակի հոգիներս հանեցին, դրա համար էլ մի անգամ չհամբերեցի այլևս ու պատասխանեցի.

— Ձեր Հովիկն էլ որ ամառը մնա բակում, պետք է գնդակ խաղա և փոշոտվի: Ուրիշ ի՞նչ կարող է անել այստեղ:

Չգիտեմ, Հովիկը լսե՞լ էր իմ ասածը, թե՞ ոչ, բայց այս ամառ նա ճամբար չմեկնեց: Ասաց, որ պետք է օգնի հորը՝ իրենց բնակարանը նորոգելու: Հայրը ներկում էր դռներն ու պատուհանները, իսկ Հովիկը լաթի կտորով մաքրում էր ներկոտված ապակիները: Կամ ջուր էր հասցնում հորը, երբ նա շաղախ էր պատրաստում պատերի ճաքերը սվաղելու համար:

Ազատ ժամերին Հովիկը բակ էր գալիս, մեզ հետ խաղում, փոշոտվում: Երկու-երեք անգամ խաղաց և նորից փակվեց իրենց տանը: Սա չէ՞ր ձեր գոված Հովիկը: Դե թող աչքի ընկնի, թող հետաքրքիր գործեր կատարի փոշոտ բակում:

Ես արդեն ուզում էի հենց այսպես էլ ասել մեր բակի այն մեծահասակներին, ովքեր մեր երեսով էին տալիս Հովիկի կատարած գործերը: Ուզում էի, բայց





ուշացա: Մի երեկո Հովիկը նորից բակ իջավ: Պտտըվեց այս ու այն կողմ, ուշադիր նայեց շուրջը և ասաց մեկ.

— Եկեք խարույկ վառենք:

Ես չէի ուզում նրա պոչից քարշ գալ, նրա ասածը անել: Բայց մեր բակի երեխաները կրակ սիրում են: Իսկույն հավաքեցին բակում թափթփված փայտի կտորները, թղթերը, ջարդված արկղերը, կիտեցին, խարույկ վառեցին: Ես էլ միացա նրանց, որովհետև չեմ սիրում մենակ մնալ:

Շուտով կրակի շուրջը հավաքվեցին մեր բակի բոլոր տղաները: Հովիկի առաջարկով նրանք խարույկի շուրջը մաքրեցին քարերից, հարթեցրին:

— Ո՞վ կարող է նվագել,— հարցրեց Հովիկը:

Բոլորը նայեցին իմ կողմը, որովհետև ես մասնակցում եմ պիոներպալատի երաժշտական խմբակի պարապմունքներին և ամենալավ նվագողն եմ բակում: Ե՛վ կիթառ ունեմ, և՛ փոքրիկ հարմոն: Ես չէի ուզում նվագել Հովիկի ասելով, բայց քանի որ երեխաները խնդրեցին, բերեցի գործիքներս և նվագեցի: Դե թող բոլորը տեսնեն, թե ով է ավելի շնորհալի՝ ե՞ս, թե՞ այդ Հովիկը, որ կիթառը կարգին բռնել էլ չգիտե:

Տղաներից մեկն էլ դհոլ բերեց: Մեր ուրախ նվագը շուտով խարույկի մոտ հավաքեց նաև բակի աղջիկներին: Եկան նաև մեծահասակները: Մութն արդեն ընկել էր, սակայն ոչ ոք չէր ուզում հեռանալ: Ամենաամաչկոտ տղաներն ու աղջիկներն անգամ այդ օրը երգում էին, պարում, բանաստեղծություններ արտասանում:

— Եկեք բակը լավ մաքրենք, բակային ճամբար կազմակերպենք,— առաջարկեց Հովիկը:

Բոլորն ուրախացան: Ես էլ էի համաձայն, բայց քիթ ու մռութս ծռմռեցի: Իսկ երբ բոլոր երեխաները գործի անցան, ես էլ միացա նրանց: Նույնիսկ ամենածույլ տղաներն ու աղջիկներն էին ոգևորված օգնում մեզ: Օգնության եկան նաև մեծահասակները: Մենք հարթեցրինք բակը, ավազ փռեցինք, իսկ մեծահասակները ընդարձակ տաղավար ու փոքրիկ բեմահարթակ պատրաստեցին, դրոշակասյուն տնկեցին, նստարաններ շարեցին:

Ինձ նշանակեցին ճամբարի նվագախմբի ղեկավար:

Առաջին անգամ ամառը մեր բակում անցավ ուրախ, աննկատ: Մեր ճամբարի շնորհիվ նույնիսկ բակի մեծահասակներից շատերը, որ մինչ այդ կար-

գին չէին ճանաչում իրար, մտերմացան: Շուտով ինձ էլ սկսեցին գովել.

— Ապրես,—ասում են,— լավ ես նվագում:

— Շնորհակալություն,— ասաց մի մորաքույր,— իմ Հակոբիկին նվագել ես սովորեցրել:

Բոլորի առաջարկով իմ ծննդյան օրը մեր ճամբարի տաղավարում ուրախ խնջույք կազմակերպվեց: Նորից բոլորը գովում էին ինձ, շնորհակալություն հայտնում: Ես աչքի տակով նայում էի Հովիկի կողմը և մտքումս պարծենում. «Դե գնա, չկարծես, թե մենակ դու ես աչքի ընկնում բակում»:

Ինձ թվում էր, թե Հովիկը նախանձից կչարանա ու կհեռանա երեկոյից: Բայց նա ուրախ-ուրախ մոտեցավ, սեղմեց ձեռքս և ասաց.

— Շնորհավորում եմ,— ու մի հաստափոր, գեղեցիկ գիրք նվիրեց ինձ:

Ինձ համար անսպասելի էր նրա անկեղծ ուրախությունը: Ես մտքումս նախատեցի ինձ, որ վատ եմ մտածել Հովիկի մասին, սխալվել եմ: Մինչ այդ ես բարակ գրքերն անգամ հազվադեպ էի կարդում: Բայց Հովիկի նվիրած գիրքը կարդացի ծայրեծայր, որովհետև արդեն ուզում էի ընկերություն անել նրա հետ: Նրա խորհրդով դրանից հետո սկսեցի հաճախակի գրքեր վերցնել գրադարանից ու կարդալ:

Այժմ ամառային արձակուրդները ավարտվել են: Դասերը նորից սկսվել են: Հազվադեպ ենք հավաքվում մեր բակային ճամբարում: Հովիկը նորից զբաղված է իր դասերով, դպրոցական գործերով: Նրա մասին նորից բոլորը խոսում են գովեստով, բայց ես այլևս չեմ դժգոհում: Ընդհակառակը: Երբ մեր ուսուցչուհին առաջարկեց շարադրություն գրել, թե ով ինչ հետաքրքիր հանդիպում է ունեցել ամռանը, ինչ հետաքրքիր դեպք է հիշում արձակուրդի օրերից, ես գրեցի մեր բակի Հովիկի մասին, իմ և նրա ընկերության մասին: Գրեցի հուզված, կլանված: Եվ առաջին անգամ ուսուցչուհին գովեց իմ շարադրությունը, ցույց տվեց ամբողջ դասարանին, առաջին անգամ ես «հինգ» ստացա շարադրությունից:



# ՆԱՄԱԿ «ԻՆՔՆՈՒՐՈՒՅՆ» ԸՆԿԵՐՈՋՍ

ԳԱՐԻԿ ԻՍՐԱՅԵԼՅԱՆ

Երբ երեկ քեզ հանդիպեցի, ցույց տվեցիր նոր ստացած անձնագիրդ և հպարտությամբ ու անսքող ուրախությամբ նետեցիր.

— Վերջապես, այլևս ոչ ոք ինձ չի կարող ասել, թե ինչպես ապրեմ. ես արդեն չափահաս եմ...

Չգիտեմ ինչու, ինձ թվաց թե դու դա չէիր ուզում ասել: Պարզապես անձնագիր ստանալը քեզ համար մեծ, շատ մեծ ուրախություն էր, և այդ ուրախությունը չկիսել հնարավոր չէր: Դա դու արեցիր տարիքիդ հատուկ նախահարձակ տոնով:

Դու «դժվար» երեխա ես եղել: Հիմա այդպես է ընդունված. մի արտասովոր բան անես կամ անես թե չէ, հաջորդ օրը կիմանաս, որ «դժվար» երեխա ես: Սկզբում այդ «դժվար» բառը քեզ վիրավորեց, հիշո՞ւմ ես, որ նույնիսկ արտասվեցիր, բայց հետո, երբ բոլորը՝ ծնողներդ և ուսուցչուհիդ ամեն քայլիդ սկսեցին քեզ հիշեցնել այդ մասին, դու ընտելացար այդ բառին և դեռ ավելին, զգացիր, որ դա քեզ որոշակի առավելություններ է տալիս: Տանը սկսեցին ավելի հաճախակի ձեռք թափ տալ և հրաժարվել քեզ խելք հասկացնելուց, դպրոցում՝ ստացածդ վարքի լավ կամ բավարար գնահատականը գերազանց վարք ունեցող ընկերներիդ կարծես թե ստիպում էր ավելի զգուշորեն վերաբերվել քո ամեն քայլին, ամեն րոպե քեզնից մի անարդարացի արարք սպասել:

Ընդմիջման ժամանակ դու բուֆետում առաջին նախանձաշողն էիր, որովհետև հերթ կանգնելը քեզ համար անընդունելի էր և ոչ թե դժվար: Բոլոր տեսակ ծեծկռտուքներում առաջինն էիր, որովհետև երկրորդը լինելու իրավունք չունես և այլն, և այլն:

Հենց այդ ժամանակ էր, որ դուք հանդիպեցիք։ Դու և ինքնուրույնությունը։ Դա ինքնուրույնության հասնելու միակ և ճիշտ ճանապարհը չէր։ Բայց և այնպես դու հասար ինքնուրույնության։

Այժմ մի փոքր ետ գնանք։ Այն ժամանակ, երբ դու նոր էիր սկսել ճաշակել «դժվար» երեխա լինելու պտուղները, համադասարանցիներիցդ մեկը, որը գերազանց վարք ուներ, որը հերթի էր կանգնում բուֆետում և երբեք անհարկի կռիվների մեջ չէր մտնում, նույնպես գնում էր դեպի այդ ինքնուրույնությունը։ Դու չէիր կարող դա չնկատել, քանի որ նա միակ արգելքն էր քո լիակատար հեղինակությունն ու միապետությունը հաստատելու ճանապարհին։ Չգիտես ինչու, նա կարողանում էր միշտ սասանել քո մասին կազմված կարծիքը, մի խոսքով՝ զգալ տալ այն վիրավորանքը, որ ապրեցիր առաջին անգամ «դժվար» երեխա բառերը լսելիս։ Նա խելացի էր։ Նա ամեն ինչ հասկանում էր, և դու նրան ատում էիր։

Ծնողներդ աշխատում էին, քույրդ սովորում էր, և դու՝ 5-րդ «բ» դասարանի պատուհասդ, սկսեցիր լողալ ինքնուրույնության ծովի մեջ՝ դառնալով մորդ աչքի արցունքը, հորդ ըսպառնալիքը, ուսուցիչների չըսիրած աշակերտը։

Առաջին անգամ տանը չգիշերեցիր։ Առաջին անգամ դըպրոց չգնացիր։ Առաջին անգամ քեզ մոտ ծխախոտ գտան, առաջին անգամ մորդ պայուսակից փող վերցրեցիր, առաջին անգամ տնից փախար, առաջին անգամ մենակ գնացք նստեցիր... Հետո երկրորդ անգամ, հետո երրորդ, չորրորդ...




...Դու նստած էիր սրճարանում, քեզ հետ էին 17—18 տարեկան երկու տղա և մի աղջիկ, որոնց դու ընկերներ ես համարում, և ես շատ էի ցանկանում, որ նրանք իսկապես քո ընկերները լինեին։ Այդ ժամանակ դու 14 տարեկան էիր։ Դու սիգար էիր ծխում, իսկական հավայական սիգար։ Դու կոմս Մոնտե Քրիստոն էիր։ Միայն թե շատ ծիծաղելի Մոնտե Քրիստո։ Անլվա, գզգզված մազերով, ժամանակից շուտ սափրված, կարմրած դեմքով։ Ոչ ոք չէր կարող ասել, թե դու ինքնուրույն չէիր։ Անում էիր՝ ինչ մտքովդ անցնում էր, ինչ թույլ էին տալիս ծնողներիդ անհույս հետապնդումները, նրանց կույր սերը։ Բայց այդ պահին քեզ մոտեցավ քո նախկին համադասարանցին։ Հենց նա, որին ատում էիր։ Դուք խոսեցիք դպրոցի, ընկերների մասին, և դու սարսափով նկատեցիր, որ նա քեզ խղճում է, խըղճում է քեզ՝ Մոնտե Քրիստոյին։ Քեզ, որ 13 տարեկան հասակում տեսել էիր Մոսկվան, Լենինգրադը, Սոչին, Թբիլիսին, քեզ, որ եղել էիր հայտնի ռեստորաններում, որ կարող էիր իսկական սիգար ունենալ և ծըխել... Նա քեզ խղճում էր։ Դու քշեցիր նրան և արտասվեցիր։ Այո՛, դու արտասվեցիր։

Բարեկա՛մս, երեկ դու ինձ ցույց տվեցիր քո անձնագիրը և ես զգացի, որ դու ուրախ ես, որ դու շատ ուրախ ես. ես ավելին գիտեմ, հիմա դու սովորում ես, պարապում սպորտով...

Պատահաբար չէ, որ հիշեցի այս իրական պատմությունը։ Ցավոք, դեռ կան քեզ նման տըղաներ և աղջիկներ, որոնք այնքան մակերեսորեն են հասկանում ինքնուրույնություն բառը, որոնք այն պարզապես նույնացնում են ամեն ինչ անելու կեղծ ազատության հետ, և, երբ տարիներ հետո նայում են ետ, ապա միայն ափսոսանքի և զզվանքի դառն պահեր են ապրում։ Նըրանք շատ չեն, բայց դա կարևոր չէ։ Չէ՞ որ այն հասարակությունը, որը քեզ անձնագիր է տվել, պայքարում է յուրաքանչյուր մարդու երջանկության համար և նրա համար բոլորովին էլ միևնույն չէ, թե ինչ ճանապարհ կընտրես դու։




# ՇՈՒՆՆ ՈՒ ԿԱՏՈՒՆ

*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
(բանասիրական գիտությունների դոկտոր)

Այս տարի լրանում է «Շունն ու Կատվի» ստեղծման 90 տարին:

1886 թվականին Հովհաննես Թումանյանը, երբ դեռևս 17 տարեկան պատանի էր, գրեց այս ավանդությունը, որ հետագայում, մշակվելով, տեղ գտավ բանաստեղծի ոչ միայն բոլոր գրքերում, այլև դարձավ դպրոցական դասագրքերի անփոխարինելի կարդը, շատ ազգերի մանուկ ընթերցողների սիրած գրվածքը:

Քիչ են այն գրողները, որոնց ստեղծագործությունները բավականությամբ ընթերցում է մարդն իր բոլոր հասակներում, քիչ են այն գրողները, որոնք պատկանում են ընթերցողին մանուկ հասակից մինչև ծերություն:

Հովհաննես Թումանյանը, ինչպես Ալեքսանդր Պուշկինը ռուս գրականության մեջ, այդ գրողներից է:

Թումանյանն ունի գրվածքներ, որ հասցեագրված են մանուկներին, ինչպես, ասենք, «Ծիտը», գրվածքներ էլ, որ հրապուրում են երիտասարդ կամ հասուն մարդկանց, ինչպես «Անուշը», «Թմկաբերդի առումը», քառյակները: Բայց նրա բոլոր գրվածքները, «Ծիտը» և «Շունն ու Կատուն» էլ դրանց հետ, հաճույքով կարդում են ոչ միայն փոքրերը, այլև մեծերը:

Տարիք առած մարդն էլ սիրով է կարդում «Գիքորն» ու «Ահմադը», «Չախ-չախ թագավորն» ու «Սուտլիկ որսկանը», հաճույքով է մտաբերում «Շունն ու Կատվի» պարզ, կրնգուն տողերը.

**Ժամանակով Կատուն ճոն էր,**
**Շունն էլ գլխին գդակ չուներ...**

Այն «Շունն ու Կատուն», որին մենք ծանոթ ենք, միանգամից չի ստեղծվել: Այդ ավանդությունը, ինչպես Թումանյանի գրեթե բոլոր գրվածքները, բյուրեղացել և արվեստի կատարելության են հասել մշակվելով ու հղկվելով, թեև տպավորությունն այնպես է, թե դրանք գրվել են մի շնչով:

«Շունն ու Կատուն» գրվել է 1886-ին, բայց առաջին անգամ լույս է տեսել 1892-ին՝ Մոսկվայում, Թումանյանի երկերի երկրորդ հատորում:

Հետագայում, հատկապես 1902-ին, որ Թումանյանի ստեղծագոր-







ծական կյանքի ամենաբախտավոր ժամանակն է, բանաստեղծը մշակել, հղկել, նոր փայլ է տվել իր հին գրվածքներին ու նաև «Շունն ու Կատվին», որի բարբառային դարձվածքներն ու բառերը փոխարինել է գրականով: Հենց այս տողերն էլ, որ այնքան լավ բնորոշում են Շանը՝

**Համ ասում ես, համ չես կարում,**
**Համ խոսում ես, վրես գոռում,**
**Հա՛մ, հա՛մ, հա՛մ, հա՛մ,**
**Քանի՞, ախպե՛ր, գնամ ու գամ...**

Թումանյանն ավելացրել է 1902 թվականին:

Այսպես, հղկվելով, ձեռք է բերվել գրական արվեստի այն բարձր որակը, որ իրավամբ կոչվում է թումանյանական:

# 90 ՏԱՐԵԿԱՆ



1908 թվականին «Շունն ու Կատուն» առաջին անգամ լույս է տեսնում առանձին գրքույկով, նկարազարդ (նկարազարդման հեղինակն է Գարեգին Երիցյանը): Դրանից հետո մինչև այսօր «Շունն ու Կատուն» հրատարակվել է անթիվ-անհամար անգամ ոչ միայն հայերեն, այլև ուրիշ շատ լեզուներով՝ դառնալով նաև այդ ազգի մանուկների սիրելի գործը: Այդ թարգմանությունների մեջ աչքի է ընկնում Ս. Մարշակի ռուսերեն հիանալի թարգմանությունը, որ լույս տեսավ 1969-ին՝ Թումանյանի ծննդյան 100-ամյակի առիթով, մանուկների սիրելի Կորնեյ Չուկովսկու առաջաբանով և Վիտալի Ստացինսկու գեղեցիկ պատկերազարդումով:




Ասենք նաև, որ «Շունն ու Կատուն» շատ և շատ անգամ բեմ է հանվել տիկնիկային թատրոններում, իսկ 1939-ին «Շունն ու Կատուն» մուլտիպլիկացիոն կինոնկարն առաջին մրցանակ է ստացել Նյու-Յորքի միջազգային ցուցահանդեսում:

Մնում է ասել նաև, որ «Շունն ու Կատուն», ինչպես Թումանյանի մյուս գրվածքները, այնքան պարզ հրապուրիչ լինելով, իրենց մեջ թաքցնում են թանկագին մի խորհուրդ, կարևոր մի խրատ, որ միանգամից չի երևում:

Ինչպես «Ուրագն ու սղոցը», որ մեզ սովորեցնում է մտածել ոչ միայն մեր սեփական անձի, այլև դիմացինի մասին.

**Մի՛ լինի ուրագի պես,**
**Միշտ դեպի քեզ, միշտ-դեպի քեզ,**
**Այլ եղիր սղոցի պես,**
**Մին դեպի քեզ, մին դեպի մեզ:**

Ինչպես «Փիսիկի գանգատը», որ սովորեցնում է, թե ինչ վատ բան է կրպարտությունը, ինչպես «Տերն ու ծառան», որ դաս է տալիս ագահ ու աչքածակ մարդկանց, ինչպես «Մի կաթիլ մեղրը», որ մեզ ասում է, թե որքան աղետաբեր է լինում անմիտ թշնամանքը, այդպես էլ «Շունն ու Կատուն» մեզ հետ խոսում է պարտքի ու պարտաճանաչ լինելու մասին, ցույց է տալիս, թե ուր է հասցնում պարտապանց արարքը: Եվ, իհարկե, «Շունն ու Կատուն» մեզ պատմում է ոչ թե կենդանիների մասին, այլ, նրանց անվան տակ, մարդկանց ու մարդկային հարաբերությունների մասին:

Այդպես էլ իրենց ներքին իմաստըն ունեն Թումանյանի մյուս գրվածքները՝ մեծ թե փոքր, չափածո թե արձակ: Ուրեմն, մեր՝ ընթերցողներիս, պարտքն է ուշադիր լինել Թումանյանի գրվածքները կարդալիս, ընթերցման հրճվանքի հետ միասին խորանալ դրանց իմաստի մեջ, իմանալ, որ Թումանյանը ոչինչ հենց այնպես, առանց ներքին խորհրդի չի գրել:





րայիկս նկարելու սեր ուներ: Հենց որ դասերը պատրաստում վերջացնում էր, իրեն նկարելուն էր տալիս: Նկարում, հա՛ նկարում էր. սար ու ձոր, գետ ու անտառ, ծառ ու ծաղիկ, կով ու ձի: Մի խոսքով, ինչ տեսնում էր, ինչ ամեն օր աչքի առաջն էր: Չէինք խանգարում, թող նկարի. տասը տարեկան երեխան պարապ ժամանակը մի բանով պիտի լցներ: Նա էլ նկարելով էր լցնում: Այդ աննպատակ դես-դեն ընկնելուց հազար անգամ լավ էր: Ես ու մայրը հետո հասկացանք, որ, չէ, դրա տակ ուրիշ բան կա: Երևի երկար ժամանակ չհասկանայինք, եթե տղայիս դիրեկտորը ինձ դպրոց չկանչեր:

— Բարև՛, ընկե՛ր Մարջանյան,— ասացի, ներկայանալով:— Խե՞ր լինի. կանչել ես:

— Խեր լինելը քեզնից է կախված, ընկե՛ր Սահակյան—բարևիս պատասխանելով, խոսեց նա:

Նստեցի:

Հա՛, չմոռանամ, առանձնասենյակում էր նաև տղայիս նկարչության դասատու ընկեր Մինասյանը:

— Մեր պարտքը, ընկե՛ր Սահակյան, դպրոցի պարտքը,— իր ասելիքն սկսեց ընկեր Մարջանյանը,— աշակերտներին հանրակրթական գիտելիքներ տալն է: Նրանց ապագայի մասին մտածելն էլ ծնողների պարտքն է: Արայիկդ նկարելու ընդունակություն ունի. այնպե՛ս արա, որ չկորչի նրա այդ ընդունակությունը: Մտածի՛ր այդ մասին, ընկե՛ր Սահակյան:

— Եվ լա՛վ մտածիր,— իր կողմից ավելացրեց ընկեր Մինասյանը:

Երբ երկու ուսումնական մարդ, մի դիրեկտոր, մի դասատու, նստել մտածել են տղայիս մասին, ես ի՞նչ է, մի կո՞ղմ կանգնեի:

— Մտածեմ,— պատրաստակամ ասացի ու եկա տուն:

Այդ ժամանակ էր, որ ես ու մայրը գլխի ընկանք, որ նկարելը Արայիկիս համար ո՛չ դաս պատրաստել էր, ո՛չ էլ պարապ ժամանակը մի բանով լցնել: Տղան նկարելու սեր ուներ, ընդունակությունն էլ հետը: Դրա համար էր նա նկարում, հա՛ նկարում: Սար ու ձոր, գետ ու անտառ, ծառ ու ծաղիկ, կով ու ձի: Մի խոսքով, ինչ տեսնում էր, ինչ ամեն օր աչքի առաջն էր:

Ես, որպես ծնող, ինչ խոսք, ինչպես ասել էին ընկեր Մարջանյանն ու ընկեր Մինասյանը, պիտի այնպես անեի, որ չկորչեր նրա այդ ընդունակությունը, պիտի մտածեի տղայիս ապագայի մասին:

Մտածելս այն եղավ, որ վերցրի որդուս նկարները, հետն էլ նրա նամակը, և ուղարկեցի Երևան: Այսպես ու այսպես, սիրելի՛ քեռիներ, այս գործերը ես եմ նկարել, տարիքս էլ այսքան է, ասե՛ք, ինչ անեմ:

Տրակտորիստ մարդ էի, ուշքս ու միտքս վարի ու ցանքի վրա, բայց մի քանի օր անկանոն Երևանի կողմն էր. ի՞նչ կասեին քեռիները:

Շնորհակալ եմ, չուշացրին իրենց ասելիքը:

Սիրելի Արայիկ, գրեցին, լավ հարց ես տվել մեզ, շատ լավ հարց. ի՞նչ անես: Պատասխանում ենք: Ինքդ նկարիր, ուրիշի աշխատանքի հետ գործ չունես: Հենց որ քո նկարած գործերը ստանանք, այն ժամանակ էլ կասենք, թե ինչ անես:

Ո՞նց թե՝ ինքդ նկարիր: Բա ո՞վ էր նկարել:

Գարնանացանի օրերն էին, թե չէ, ուսս Երևան կգցեի, ու մարդիկ կիմանային ինչ ասել է՝ ինքդ նկարիր: Արայիկիս էլ ուղարկել չէի կարող, դպրոց կար, դաս կար:

Մնում էր հարմար ժամանակի սպասել: Ես էլ սպասեցի:

Արայիկս, սիրտը կոտրված, գլուխը կախ, իրենը շարունակեց: Նկարեց, հա՛ նկարեց. սար ու ձոր, գետ ու անտառ, ծառ ու ծաղիկ, կով ու ձի: Մի խոսքով, ինչ տեսնում էր, ինչ ամեն օր աչքի առաջն էր:

Մի անգամ էլի՛ ասացի.

— Արայի՛կ, արի բախտդ նորի՛ց փորձենք, ո՞վ գիտե, գուցե քեռիները հիմի նկարներիդ մեջ քո ձեռքը տեսնեն:

Սրտում վիրավորանք չպահող, մաքուր ու ազնիվ երեխա, լսեց ինձ: Հավաքեց ունեցած-չունեցածը,




ԳԱՐԵԳԻՆ ԲԵՍ

հետո էլի մի նամակ և՝ ուղիղ Երևան: Սիրելի քեռիներ,՝ ազնիվ պիոներական, ինչ որ տեսնում եք՝ ես եմ նկարել: Ասեք, ի՞նչ անեմ: Ես էլ իմ կողմից ավելացրի. հավատացեք տղայիս, այդ նկարները նրա ձեռքի գործն են:

Արի տես՝ որ չհավատացին:

Սիրելի Արայիկ, տեսեք ինչ գրեցին, այս նկարների հեղինակը քեզնից տարիքով մեծ մարդ է ու, նկարելու մեջ՝ փորձված: Ամեն ինչից երևում է, որ քո հայրն է: Ինքը ամաչում է իր անունով ուղարկել, քեզ է մեջ գցել: Ասա թող չամաչի, հայրդ մեծ ընդունակության տեր մարդ է, և նրանից, հաստատ, նկարիչ դուրս կգա: Մենակ, թող նկարների տակ իր անունը դնի, որ մենք էլ ասենք, թե նա ինչ անի: Այդպիսի ընդունակ մարդուն չենք թողնի կորչի, կօգնենք:

Ուրախացա, շատ ուրախացա: Այդ ոչինչ, որ նրանք ինձ տղայիս տեղ էին ընդունում, կարևորն այն էր, որ իրենց ձեռքի տակ գտնվող նկարների մեջ բան էին տեսնում:

Մնացածը՝ հեչ: Ուր որ է, վարն ու ցանքը հանդերում կվերջանային, դասերը՝ դպրոցում, Արայիկիս վերցրած, կգնայի Երևան, այնտեղ մարդիկ իրենց աչքով կտեսնեին՝ ինչը ինչոց է և կօգնեին նրան, ում հարկավոր էր օգնել:

Ուզում էի տղայիս էլ ուրախացնել, տեսա, չէ, սա ունքերն իրար է տվել, իր նկարած սարերի ու ձորերի պես մթնել: Ասես, էս է հա՛, անձրև էր գալու:

— Արայի՞կ,— ձայն տվի,— քիթդ կախե՞լ ես:

— Ի՞նչ անհավատ մարդիկ են,— հարցս թողած, հոգոց հանեց նա:

Սիրտ տվի:

— Դու քո գործի՛ն կաց,— ասացի,— չիմացա՞ր, որ նկարելու ընդունակություն ունես, նկարիչ կդառնաս: Այդ ոչինչ, որ կարծում են, թե դու՝ ես եմ: Դա ժամանակավոր բան է:

Խե՜ղճ երեխա. չգիտեր, որ մարդուս համար՝ նպատակին հասնելու ճանապարհը միշտ էլ քարքարոտ է լինում:

Բայց, ավնիվ խոսք, ուրիշը որ նրա տեղը լիներ, վայ թե հուսահատվեր, մատիտն էլ շպրտեր, վրձինն էլ, թուղթ ու ներկն էլ: Արայիկս, չէ, առաջվա պես էլի նկարեց, հա՛ նկարեց. սար ու ձոր, գետ ու անտառ, ծառ ու ծաղիկ, կով ու ձի: Մի խոսքով, ինչ տեսնում էր, ինչ ամեն օր աչքով էր ընկնում:

Մի օր էլ չգիտեմ խելքին ինչ փչեց:

— Հայրի՛կ,— ասաց,— արի նկարներս քո անունով ուղարկենք, տեսնենք հիմա ինչ կասեն:

— Չէ՛, Արայի՛կ ջան,— ասացի,— ամեն ինչ կանեմ, էդ մեկը՝ երբեք: Քոնը՝ քեզ, իմը՝ ինձ:

— Որ՝ ամեն ինչ կանես,— բռնացրեց նա,— մի քանի բան դու նկարիր, մի քանի բան՝ ես, ու միասին ուղարկենք քեռիներին: Կույր չեն, կտեսնեն՝ ով եմ ես, ով ես դու:

— Արայիկը ճիշտ է ասում,— միացավ մայրը:

# և որդի

— Արայի՛կ,ախր ես ո՞ր օրվա նկարիչն եմ, որ էդպիսի բան անեմ:

— Ես գիտեմ, որ նկարիչ չես,— վրա բերեց նա,— թող քեռիներն էլ իմանան ու ինձ քեզ հետ չշփոթեն:

— Խանչալիդ քարը չի՛ ընկնելու,— վրա տվեց մայրը,— նկարի՛ր: Բա երեխան չիմանա՞ իր ինչ լինելը:

Մայր ու տղա օձիքս բաց չթողեցին. նկարիր հա՛ նկարիր. քեռիները քո նկարածն էլ կտեսնեն, Արայիկի նկարածն էլ ու կհասկանան, որ Արայիկը նկարիչ է, դու՝ տրակտորիստ:

Ճա՛րս ինչ, տեղի տվի:

— Լա՛վ,— ասացի,— ընդունենք, թե ձեր խոսքով գնացի, բայց ի՞նչ նկարեմ, որ, գոնե, ինձ սազական լինի:

— Ինչ նկարե՞ս,— ծոր տվեց տղաս,— կոմբա՛յն նկարիր, տրակտոր, շարքացան:

Ժողովուրդ, չերկարացնեմ, տրակտորի ղեկը թողած, ձեռքս մատիտ առա ու նկարեցի. կոմբայն, տրակտոր, շարքացան: Մի խոսքով, ինչ տեսնում էի, ինչ ամեն օր աչքիս առաջն էր:

Միացրի Արայիկիս նկարներն ու իմ՝ վայ նկարները, հետն էլ գրածս նամակը, և՝ գնացեք Երևան: Սիրելի ընկերներ, գրեցի, այն սարն ու ձորը, ծառն ու ծաղիկը՝ տղայիս գործերն են, կոմբայնը, տրակտորը, շարքացանը՝ իմը:

Այդ ընկերները, Երևանում նստած, ասես նամակիս ու նկարներին էին սպասում: Տեղնուտեղը պատասխանեցին: Սիրելի Արայիկ և հարգելի Հակոբ Սահակյան, գրեցին, հիմի որ հանգիստ խղճով կարող ենք ասել, թե ձեզնից ով ինչ անի: Ամենից առաջ, քո մասին, Արայիկ: Նկարիչ դառնալու մտքից ձեռք քաշիր, դա քո բանը չի, դրա համար դու, չնեղանաս, շնորհք չունես: Նկարչությունը քեզանից էնքան է հեռու, ինչքան դու՝ Մասիս սարից: Ոչ քո կոմբայնն է կոմբայն, ոչ տրակտորը՝ տրակտոր: Շարքացանի մասին դեռ չենք էլ ասում: Դրանք խայմկոց են, ուրիշ ոչինչ: Բայց քո մեջ մի լավ բան կա; համառություն: Մնում է, որ դու դա ուրիշ տեղ օգտագործես: Նորից ենք ասում, նկարիչ դառնալու համար շնորհք է հարկավոր: Իսկ դու չունես այդ շնորհքը: Կմեծանաս, ուրիշ բանով կզբաղվես: Դառնանք ձեզ, Հակոբ Սահակյան: Ծնողի պարտականությունը երեխային ճիշտ դաստիարակելն է, մի բան, որ դուք, դժբախտաբար, չեք անում: Լավ, այսօր կաք՝ Արայիկի փոխարեն նկարներ եք նկարում, իսկ վա՞ղը, մյո՞ւս օրը: Մի աշխարհի՞ց էլ եք շարունակելու նկարել: Այդպես ոչ ձեր տղան հեռու կգնա, ոչ՝ դուք: Թողեք Արայիկը իր դասերով զբաղվի: Իսկ դուք ձեզ Երևան զգեք: Երեք անգամ սար ու ձոր, ծառ ու ծաղիկ, և ուրիշ նկարներ եք ուղարկել մեզ, երեքն էլ իրարից տարբեր, երեքն էլ՝ մեկը մյուսից լավը: Շնորհքը ուրիշին տալ չի լինի: Ձերը՝ նույնպես: Դուք նկարիչ եք, եկեք Երևան, ձեզ հետ մենք մեծ հույսեր ենք կապում:

Արայիկս յոթերորդ երկնքում էր. ուռա՜, նկարիչ եմ դառնալու:

Մայրն էլ մյուս կողմից էր յոթերորդ երկինք բարձրացել. ուռա՜, տղաս նկարիչ է դառնալու:

— Լա՛վ է,— նրանց վրա պրծա ես,— քեռիները օրը ցերեկով ինձ անշնորհք մարդ համարեն, դուք այդպես ուրախանա՞ք: Ծափ տալ-պարելն է պակասում, այն էլ որ անեք, ամեն ինչ կթամամի:

— Ո՛վ է անշնորհքը, դո՛ւ,— լրջացավ տղաս:— Ա՛յ հայրիկ, բա չա՞ծ կաս, որ անշնորհք մարդուն այսպիսի բան տան,— ու ձեռքով պատից կախված գորգին ամրացված շքանշանս ցույց տվեց:

Տխրությունս՝ ոնց որ գետնի տակն անցնի: Իսկապես, ես իմ շնորհքը տրակտորի վրա եմ ցույց տվել, շարքացանի վրա, կոմբայնի վրա: Մնացես որ, հեչ չնեղանանք սրանից-նրանից: Ե՛ս իմ ներկան էլ եմ գտել, ապագան էլ: Մնում է, որ Արայիկիս ապագայի մասին մտածեմ:

Քիչ մնաց, հա՛. շուտով երկուսով մեզ Երևան կգցենք:

Կարծում եք, քեռիների մոտ աղմուկ-աղաղակ պիտի բարձրացնե՞մ. թե՝ քանի՞ գիտանի եք, որ ինձ անշնորհքի մեկն եք հայտարարում: Չէ, աղմուկ-աղաղակը գործ անող մարդու բան չի: Սուսուփուս, թուղթ ու մատիտ եմ խնդրելու ինձ ու Արայիկիս համար, ու ես էլի՝ կոմբայն, տրակտոր, շարքացան, Արայիկս էլ՝ սար ու ձոր, գետ ու անտառ, ծառ ու ծաղիկ, կով ու ձի: Քեռիներ, բավական է, հիմի որ տեսեք, թե նկարիչը ո՞վ է:

Բայց, մեղադրեք թե չմեղադրեք, շքանշանս կախած եմ գնալու: Ոչ թե՝ որ ինձ ցույց տամ: Չէ, իրեն ցույց տալն էլ գործ անող մարդու բան չի: Ոչ էլ նրանց ամաչեցնելու՝ իրենց գրած խոսքի համար: Դա էլ՝ չէ: Մենակ թող իմանան, որ իրենց առաջ երկու հասար մարդիկ են կանգնած, հայր ու որդի, կյանքում միշտ նպատակ ունեցող, այդ նպատակին հասնելու սեր, ընդունակություն ունեցող մարդիկ: Արայիկիս սերն ու ընդունակությունը թղթերի վրա է երևում, իմը՝ հանդերում: Ես էլ իմ գործի նկարիչն եմ: Սև գո՞ւյն եք ուզում, խնդրեմ. ցելերը ձեզ սև գույն: Կանա՞չ գույն եք ուզում, խնդրեմ. ծլած արտերը ձեզ կանաչ գույն: Ոսկեգո՞ւյն եք ուզում, խնդրեմ. հասած արտերը ձեզ ոսկեգույն:

Այդպես է, ամեն մարդ իր գործում նկարիչ պիտի լինի:



# ՀՐԱՎԵՐ

*ԼԻԴԱՐԻՏ ՍԱՐԳՍՅԱՆ*

Քրքջում է քամին՝
Շուրթին անկապ բառեր,
Շուրջը անտառն է հին,
Ներկաթաթախ ծառեր:
Հոնը արցունք կարմիր՝
Հողին գորգ է հյուսում,
Արջը տանձի համից
Բրդոտ թաթն է լիզում:
Սկյուռիկը անքուն
Ընկույզ է տուն տանում,

Մոշահավն ու կկուն
Մոշ են անուշ անում:
Էլ սալո՞ր ու խնձոր,
Էլ կաղի՞ն ու հաճար,
Լցվել են սար ու ձոր
Անչափ ու անվճար:
Բերքն ու բարիքն այսքան
Հավք-գազանի՞ն մնա,
Դո՛ւ էլ զամբյուղդ առ,
Շտապ անտա՛ռ գնա...

*Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*

*Թևավոր խոսքեր*

## ԿԵՍԱՐԻՆԸ՝ ԿԵՍԱՐԻՆ

«Կեսար» բառը Հռոմում նշանակում էր տիրակալ, միապետ: Այս բառից է ծագել ռուսական «ցեզար», «ցար» և գերմանական «կայզեր»՝ կայսր բառերը: Կեսարինը՝ կեսարին արտահայտությունը եկեղեցական առասպելի ծագում ունի: Փարիսեցիների աղանդին պատկանող Հիսուսի հակառակորդները մարդկանց ներկայությամբ նենգամիտ հարց են տալիս նրան. արդյոք պե՞տք է հարկ վճարել կեսարին, այսինքն Հռոմի միապետին, որի գաղութն էր Հրեաստանը: Նրանց միտքը պարզ էր. եթե ասեր՝ հարկավոր չէ՝ կհայտարարվեր խռովարար ընդդեմ Հռոմի, իսկ եթե պատասխաներ, թե հարկավոր է տալ՝ կգռային, որ նա իրեական ժողովրդի հակառակորդն է:

Հիսուսը, սակայն, ճանաչում էր իր հակառակորդներին և գտնում է ելքը: Նա ձեռքն է առնում հռոմեական դրամը, որով վճարում էին հարկերը, և իր հերթին հարցով դիմում է փարիսեցիներին.

— Իսկ ո՞ւմ պատկերն է դրամի վրա:

— Կեսարինը,— պատասխանում են նրան:

— Ուրեմն, տվեք կեսարինը՝ կեսարին, իսկ աստծունը՝ աստծուն,— վճռում է Հիսուսը:

Փարիսեցիները լռում և հեռանում են:

Այժմ մենք կրկնում ենք այդ արտահայտության առաջին մասը, երբ ուզում ենք ասել՝ տվեք ըստ պատկանելույն, ըստ արժանվույն:

## ՉԻՆԱԿԱՆ ՊԱՐԻՍՊ

Հին Չինաստանի կայսրության սահմանի վրա վեր է խոյանում մինչև այսօր էլ տեղ-տեղ պահպանված քարե հսկայական պատը: Կար ժամանակ, որ նրա բարձրությունը հասնում էր տասը մետրի, իսկ լայնությունը՝ յոթ մետրի: Պատը ձգվում էր վեց հազար կիլոմետր երկարությամբ՝ Չինաստանը պաշտպանելով քոչվոր ցեղերի հարձակումներից: Չին պատմաբանները հաստատում են, որ Մեծ պարիսպը կառուցել են երկու միլիոն բանվոր երեք հարյուր հազար վերակացուի հսկողությամբ: Պարիսպը եղել և մնում է ճարտարապետական զարմանալի հուշարձան, թեպետև վաղուց կորցրել է իր ռազմական նշանակությունը: Իրեն հավասարը չունեցող այս կառույցը վաղուց ի վեր զարմացրել է հարևան ժողովուրդներին: Ամենուրեք տարածված է «չինական պարիսպ», «չինական պարիսպով մեկուսացող» արտահայտությունը, որ նշանակում է անհաղթահարելի արգելք, դրսի աշխարհի հետ շփվելուց խույս տալու, մեկուսացած ապրելու ձգտում:



# ՓՈՂ... ՓՈՂ... ՓՈՂ...

(պամֆլետ)

*ՄԵԼՈՐ ՍՏՈՒՐՈՒԱ*

## ՀԱՅՏՆՎԵԼԸ ԺՈՂՈՎՐԴԻՆ

Գլեն Տարները[1] խաղում է միլիոնների հետ կըշռաքարերի պես, իսկ կշռաքարերի հետ՝ հինգ ցենտանոց մանրադրամների պես: Նա երկու ոտքով հաստատուն խրված է Ամերիկայի հողի մեջ և միևնույն ժամանակ ուրուրի պես անդադար պտտվում է նրա վրա: Պտտվում է ուղղակի և անուղղակի իմաստով: Նրա անձնական (անշուշտ ռեակտիվ) ինքնաթիռների սպիդոմետրները միջին թվով տարեկան հաշվում են մեկ միլիոն կիլոմետր:

Մի անգամ ինձ վիճակվեց ժողովրդին Տարների հերթական հայտնվելուն ականատես լինել: Դա Չիկագոյում էր՝ ամերիկյան գանգստերների ու ոստիկանների մայրաքաղաքի մարդկանցով լեփ-լեցուն օդանավակայանում: Տարները ժամանեց սեփական ռեակտիվ լայներով, որի պոչը կարդարված էր տիրոջ հըսկայական, հինգ մետրանոց, դիմանկարով: Դիմանկարի տակի մակագրությունն ազդարարում էր՝ «Անսանձելի Գլեն Տարներ»: Անսանձելու ձեռքերը խաչված էին կրծքին, հայացքն ուղղված դեպի երկինք:

Լռեցին հզոր շարժիչներն, ու սանդուղքը մոտեցրին ինքնաթիռին: Մի քանի ակնթարթից բացվեց լայների փորը, հայտնվեց կարմրազգեստ մի կերպարանք ու սկսեց հանդիսավոր վայրէջքը: Կերպարանքի երկու կողքերից, դժվարությամբ հաղթահարելով սանդուղքի բարձր աստիճանները, գլորվում էին երկու նույնպես կարմրազգեստ գլուլններ: Իսկ ներքևում,

[1] Գլեն Տարներ—Ամերիկայի մուլտիմիլիոնատեր: Մուլտիմիլիոնատեր կոչվում է այն մարդը, որի կարողությունը բազում միլիոն դոլարներով է հաշվվում:

սանդուղքի մոտ, մոլեգնում էր ամբոխը: Դիմավորողների գծավոր վերնաշապիկների վրա, չգիտես ինչու, ջրաքիսի մորթուց փողկապներ էին կապված: (Հետագայում ես իմացա, թե ինչու): Մորթե փողկապներով պարոնները օդանավակայան էին եկել շքեղ «Կադիլակներով» ու «Լինկոլններով[1]», որոնք ներսից, ինչպես դուք, երևի, արդեն գլխի ընկաք, ջրաքիսի մորթով էին պատված: Մեքենաների բամպերների վրա պլակատներ էին փակցված, որոնք ազդարարում էին՝ «Ես գիտեմ ձեզ հարստացնելու ձևը, եթե դուք այնքան համարձակություն ունենաք, որ ինձ հարցնեք այդ մասին»: Դիմավորողները Հյուգոյի վեպի ծիծաղող մարդու նման ականջից-ականջ բացված բերաններով, գոռում էին անհասկանալի մի բառ՝ «Մmmoonnéy»:

Մեծագույն դժվարությամբ ես հասկացա, որ ծայրահեղորեն լարելով իրենց ձայնալարերն ու մորթե փողկապներով սեթևեթող եղյային վզերը, մարդիկ գոռում էին՝ «Money», այսինքն՝ «փող»:

Գլեն Տարները վերջապես հաշվեց սանդուղքի բոլոր աստիճաններն ու ոտքը գետին դրեց: Ամբոխն խոլույն շրջապատեց նրան: Նա սեղմում էր դեպի իրեն ձգվող ձեռքերը, խփում էր ոմանց ուսերին, խառնում մյուսների մազերը և, իհարկե, բաժանում ինքնագրեր... հարյուրդոլլարանոց թղթադրամների վրա, որոնք նա անփութորեն հանում էր ոսկյա «Գ. Տ.» վենզելով պարդարված հսկայական դրամապանակից: Մի կին հիստերիայի նոպայի մեջ ցնցվում էր: Մի տղամարդ երդվում էր երբեք չմաքրել իր հուշանվերը:

— Այն մարդը, որը փողոցում հարյուրդոլլարանոց թղթադրամներ է բաժանում, համաժողովրդական սիրո իրավունք ունի,— բարբաջում էր Տարները:

— Մենք սիրում ենք քեզ: Մենք կգանք քո ետևից,— լսվում էր ի պատասխան:

Միայն օդանավակայանի շենքում ինձ հաջողվեց ընդհուպ մոտենալ Գլեն Տարներին: Նա միջահասակից քիչ բարձր էր: Հասած նռան գույնի բաճկոնը ձգված էր նրա ծանրամարմնի ուսերին: Մուգ ակնոցը նստած էր ըմբշամարտիկի քթին: Բաճկոնի կրծքին վառվում էր ամերիկյան աստղա-գծավոր դրոշը, որն առատորեն պարդարված էր խոշոր ադամանդներով ու սուտակներով: Մարգարեն նապաստակի շուրթ ուներ[1]: Այն ամենևին չէր այլանդակում Տարների դեմքը, թերևս ընդհակառակը, նրան պարգևում ուրախության, ժպտադեմության ու մատչելիության արտահայտություն էր տալիս:

Թիկնեղները՝ երկվորյակ եղբայրներ Ջոնն ու Գրեգը (երկուսը միասին 66 դյույմ[3]) որոնք խլպլտում էին Տարների ոտքերի մոտ, փոքր չափերով մինչև ամենաչնչին մանրամասնությունները կրկնում էին նրան: Նույն սանրվածքը, նույն մուգ ակնոցները, նույն նռնագույն կոստյումը, նույն փղոսկրե ավնիվ երանգի կոշիկները, նույն ադամանդներով ու սուտակներով առատորեն պարդարված ամերիկյան դրոշը, թեև ավելի փոքր չափերի: Կարճ ասած, Տարներ-մանրաչափիկները ջրի երկու կաթիլի պես նման էին Անսանձելիին:

Ժամանակ առ ժամանակ Տարները ձեռքերն իջեցնում էր թզուկների գլուխներին ու հարցնում էր.

— Ինչպե՞ս եք, տղանե՛ր:

Ջոնն ու Գրեգը, «երկուսը միասին 66 դյույմ», ի պատասխան ծվծվում էին, ըստ երևույթին լավ սերտած ու բազմիցս կրկնած դարձվածքը.

— Ցենտերի կույտի մեջ ընկած դոլլարների պես, միստր Տարներ:

Դարձվածքը այս հնչում էր մեկնասկսքի ատրճանակի կրակոցի պես: «Մmmoonnéy»— դեպի երկինք էր թռչում սեթևեթանքով մորթե փողկապներ կապած կոկորդներից:

Վերջապես Գլեն Տարները ճեղքեց պաշտողների ամբոխը, հասավ «Լիմուզինին» ու ընկավ մորթապատ նստատեղին: Նրա ետևից «Լիմուզին» մագլցեցին թզուկները: Եվս մի ակնթարթ և «Կադիլակների» ու «Լինկոլնների» երկար ու ձիգ շարասյունը սլացավ դեպի Չիկագո, շչակների խլացուցիչ աղմուկ տարածելով նրա փողոցներով:

### ԻՆՉՊԵ՞Ս Է ՀԱՐՍՏԱՑԵԼ ՏԱՐՆԵՐԸ

Գլեն-Նապաստակաշուրթը ծնվել է Մերրիոն գյուղակում, Հարավային Կարոլինայից եկած կիսաաղքատ մշակի ընտանիքում: Դպրոցն ավարտել նրան չէր հաջողվել, վատ սովորելու պատճառով հեռացրել էին ութերորդ դասարանից:

Այն ժամանակ Գլենը որոշեց վերաորակավորվել որպես միլիոնատեր: Մի քանի տարվա ընթացքում նա փոխեց քսանվեց մասնագիտություն, բայց դրանցից ոչ մեկը ոչ մի գրոշ չբերեց նրան:

Տարները, սակայն, չէր փիատվում: «Աբրահամ Լինկոլնը մինչև պրեզիդենտ դառնալը տասնութ անգամ պարտություն է կրել»,— մխիթարում էր նա իրեն:

1967-ին Գլենը խոր Հարավի տանտիկիններին կարի մեքենաներ վաճառող շրջիկ գործակալ դարձավ: Այցելում էր ագարակները, որտեղ իր նման աղքատ մշակներ էին ապրում, ու նրանց մայրերին, կանանց ու աղջիկներին հրաշք-մեքենաների գծակարերն ու օղակները ցուցադրում:

Թեև մշակի կնոջը կարի մեքենա վաճառելն ավե-

---

[1] «Կադիլակ» և «Լինկոլն»— թանկ մեքենաների մակնիշներ:

[2] Նապաստակի շուրթ—այսպես է կոչվում ֆիզիկական արատը, երբ վերին շրթունքը մեջտեղում պատռ է:

[3] Դյույմը հավասար է 2,540 սանտիմետրի:

լի դժվար է, քան բևեռային արջին «Ջեներալ էլեքտրիկ» սառնարան, Տարների գործերն սկսեցին աստիճանաբար ուղղվել: Նա համարում է, որ նապաստակի շուրթը այստեղ փոքր դեր չի խաղացել:

— Ես աշխատում էի ինձ այնպես պահել, որ մարդիկ, տեսնելով իմ ֆիզիկական արատը, ոչ թե խղճան ինձ, այլ՝ ուրախանան,— հիշում է Տարները:— Բռնելով ապագա կլիենտի հայացքը, ես սովորաբար ասում էի. «Դուք նայում եք իմ նապաստակի շրթին: Շատ էլ լավ եք անում: Բայց եթե անկեղծ խոսենք, ես այն կպցրել եմ միայն այս առավոտ, որպեսզի մարդիկ նկատեն ինձ: Հարյուր դոլլարով կարող եմ այն վարձով տալ ձեզ»:

Հնարքն այս ազդում էր անխափան, հատկապես նեգրերի վրա: «Նրանք զոյվում էին, որ սպիտակ մարդը մաշում է իրենց բնակարանների շեմքերը, ծռմռվում նրանց առաջ ու իրեն ընկերաբար պահում իրենց հետ,— բացատրում է Տարները:— Իմ մասին ասում են, որ ես խարդախ եմ ու խաբեբա: Գուցե և դա այդպե՞ս է: Ես ձևանում էի, որ սիրեցի բոլոր այդ մարդկանց, և ի վերջո ինքս էլ հավատացի դրան: Այսպես ասած, խաբեցի ինքս ինձ...»

Շուտով Տարների փողերն այնքան շատացան, որ նա սկսեց իր կլիենտներին «Կադիլլակով» այցելել: Եվ այնուամենայնիվ նրա բարեհաճ բախտի անիվը երեք անգամ ետ է պտտվել, Տարներին երեք անգամ դատարանով սնանկ են հայտարարել:

Տարները վիթխարի ծրագրեր էր հասունացնում: Մի փոքր առաջ անցնելով, պատմեմ, թե ինչպես Գլեն Տարները, արդեն մուլտիմիլիոնատեր և «Լայոնս կլաբի»[1] կողմից «տարվա մարդ» հայտարարված, նույթ էր ունենում գործարարության հարվարդյան[2] դպրոցում:

Դա 1971-ի ամռանն էր:

Նա ասում էր.

— Ինչպե՞ս հաջողվեց ինձ դառնալ մուլտիմիլիոնատեր: Կրթությա՞ն շնորհիվ: Հա՜, հա՜, ինձ դուրս են վռնդել ութերորդ դասարանից: Բանը կրթությունը չէ: Մտածել է պետք, ա՞յ թե ինչ: Որքան բարձր կարծիքի լինես քո մասին, այնքան բարձր էլ կթռչես: Եթե ես՝ թերուսս, կարողացել եմ մարդ դառնալ, ուրեմն ամեն մեկը կարող է: Կրկնում եմ, բանը կրթությունը չէ: Ես առանց այն էլ օլ րայտ եմ: Իմ գրասեղանին փոքր կոճակների մի մարտկոց է տեղադրված: Անհրաժեշտության դեպքում ես սեղմում եմ հարկավոր կոճակը, կանչում հարկավոր մարդուն, որն ունի անհրաժեշտ գիտելիքներ, և նա ինձ ասում է, թե ինչն ինչպես անեմ: Ահա այն բոլորը, ինչ ինձ պետք է: Իսկ մոտ ժամանակներս ես սարքել կտամ մի մեծ կոճակ: Սեղմելով այն, կկանչեմ մի մարդու, որը կորոշի, թե փոքր կոճակներից ո՞րը պետք է սեղմել և ո՞ւմ կանչել...

Երրորդ անգամ սնանկանալով կարի մեքենաների վրա, նա մտավ շպարանյութերի ձեռնարկատուն: Եվ այստեղ նրա ըմբշամարտիկի քիթը տապկոցի մոտ հոտ վզաց. «Մարդիկ ծնվում են շպարանյութերով ու մեռնում նրանց հետ»,— դատում էր Տարները:

Այն ժամանակ Տարները սեփական դոլլարներ չուներ: Շպարանյութերի ապագա արքային հաջողվեց հարազատ հորեղբորից պարտքով հինգ հազար դոլլար դուրս կորզել: Գրպանները հորեղբոր «բակերով»[3] լցնելով, Տարները տեղափոխվեց Օրլանդո փոքր քաղաքը (Ֆլորիդայի նահանգ) ու իր սեփական գործն սկսեց: Ինկապես ասած, ոչ մի սեփական գործ չկար էլ: Կար միայն մի փոքրիկ օֆֆիս (գրասենյակ), ընդամենը երկու փոքրիկ խցիկ, որտեղից ո՛չ օծանելիքի, ո՛չ էլ առավելապես փողի հոտ էր գալիս: Այդ քոսոտ օֆֆիսը գտնվում էր Ֆլորիդայի ամերիկյան կոմմոդորուների նշանավոր համալսարանի՝ Քենեդիի հրվանդանի կողքին:

Սովորաբար ասում են, որ հեքիաթը արագ է պատմվում, իսկ բանը դանդաղ ընթանում: Տարների բարձրացման պատմությանը այս ասացվածքը ոչ մի կերպ չի սազում: Իզուր չէ, որ նրա առաջին ձեռնարկատունը միջմոլորակային բնույթ ուներ: Աճում էր այն երկրորդ կոսմիկական արագությամբ և չորս տարում դարձավ մի վիթխարի ձեռնարկություն, որը կապված էր յոթանասուն ազգային ու միջազգային ընկերություններից: Տարների ձեռնարկությունը վաճառում է վիտամիններ ու սպիտակեղեն, ակնագործական իրեր ու պարարտանյութեր, ունի մոտելների մի շղթա և ուղղաթիռների կոմպանիա, ունի նաև իր սեփական օդանավագիծը: Եվ, վերջապես, Տարների կոնցեռնի մարգարիտը՝ «Հանդգնիր մեծ լինել» ձեռնարկատունը, որը գաղափարներ է վաճառում:

Գլեն Տարներն իր կայսրության միանձնյա տերն է: Այժմ նա ունի երկու հարյուր միլիոն դոլլար: Սա ազգային, գուցե և համաշխարհային ռեկորդ է: Մինչև Տարները, անցյալի ու ներկայի ոչ մի մագնատի չի հաջողվել այսպիսի կարողություն կուտակել չորս տարում: Նրա այսօրվա տունը գնահատվում է կես միլիոն դոլլար, վաղվանը՝ երկու միլիոն: Սա Ատլանտյան օվկիանոսի ջրերին նայող դղյակ է լինելու Ֆլորիդայի ծովափին: Դղյակի շինարարությունը մոտենում է ավարտին: Պալատի դռներն ու լուսամուտները պաշտպանված են մետաղական շերտավարագույրներով, որոնք ավտոմատ կերպով իջնում են, ղեկավարվելով կոճակների միասնական գաղտնադիր կենտրոնից:

[1] «Լայոնս կլաբ»—«Առյուծների ակումբ»: Նրա անդամներն են ԱՄՆ-ի խոշոր գործարարներն ու հայտնի տնտեսագետները:

[2] Այդ դպրոցում սովորում են Ամերիկայի խոշորագույն ֆինանսիստների որդիները:

[3] «Բակ»—դոլլարի ժարգոնային անվանումը:

Դղյակի շուրջը տարածվել է մարմնամարզական համալիր, խփում են ձևավոր շատրվանների շիթերը, կիկլոպների աչքերի պես կապույտին են տալիս լողավազանները, ծաղկում են ջերմոցները. ծովի մեջ է խրվել նավարանից իջնող պրոսպեկտին սպասող հըսկայական նավամատույցը, ավտոպարկում քարացած կանգնած են երկու «Ռոլլս-ռոյս»[1] և չորսականի այլ հրաշքներ:

## ԵԹԵՐԱՅԻՆ ԴՂՅԱԿՆԵՐԻ ՎԱՃԱՌՔԸ

Ո՞րն է Տարների հեքիաթային հաջողության գաղտնիքը: Գուցե առասպելական թագավոր Միդասի[2] պես նա իր մեջ կախարդական ուժ է հայտնաբերել՝ ձեռքի մի հպումով ոսկի դարձնել ամեն առարկա՞: Ոսկեբեր երակը, որին հանդիպել ու հաջողությամբ շահագործում է Գլեն-Նապաստակաշուրթը, կոչվում է մարդկային ընչաքաղցություն, հարստության ծարավ, ոմանց հիմարություն, մյուսների հուսալքություն: Իր հարյուրավոր միլիոնները նա վաստակել է եթերային դղյակների վաճառքով: Ամերիկայում իրական դղյակ կարող է կառուցել միայն նա, ով հաջողությամբ վաճառում է եթերային դղյակներ: Իսկ այդ գործում Գլեն Տարները չունի իր հավասարը:

Այսպիսով, սկզբում այն երկու խցիկում, ուր տեղավորվել էին Տարների «Շպարանյութի ազգային միջմոլորակային համալիրները», ո՛չ օծանելիքի, ո՛չ էլ փողի հոտ էր գալիս:

Օծանելիքի փոխարեն Տարները շուկա էր հանել մի բոլորովին այլ ապրանք: Նրա անունն էր «տարածելու իրավունք»: Ամեն ոք, վճարելով Տարներին հինգ հազար դոլլար, իրավունք էր ստանում տարածելու «Կոսկոտ» ձեռնարկատան արտադրանքը, ստանում էր նաև նոր տարածողներ հավաքագրելու իրավունք: Վերջինս պարտավոր էր վճարել հավաքագրողին նույն հինգ հազար դոլլարը, որից սա իրեն էր թողնում կոմիսիոն երկու հազար վեցհարյուր հիսուն դոլլարը, իսկ մնացածը տալիս էր Տարներին: Եվ քանի որ «Կոսկոտ» ձեռնարկատունը տարածելու ոչինչ չուներ, նրա նորաթուխ շրջիկ գործակալները եռանդուն կերպով օգտվում էին հավաքագրման իրավունքից: Դա ամենակարճ ու ամենահեշտ ճանապարհն էր նախնական մուտքի վճարը՝ Տարներին տված հինգ հազարը վերադարձնելու և «արագ բակ» կուտակելու համար:

Տարների առաջին հավաքագրածը՝ մերրիոնցի տասնիննամյա հաշմանդամ մի պատանի էր (Օհայոյի նահանգ), նա իրավունքների վերավաճառքով աշխատել էր ութսուն հազար դոլլար: Դրա համար ստիպված էր եղել խաբել «արագ բակի» երեսունհինգ որոնողների: Որքան խորանում ես անտառի մեջ, այնքան ավելի են խտանում երկրաչափական պրոգրեսիայի թավուտները: Չէ՞ որ նույն ութսուն հազարը վաստակելու համար, երեսունհինգ հավաքագրվածներից ամեն մեկը պետք է իր հերթին հավաքագրեր «արագ բակի» երեսունհինգ նոր սիրահարների: Մերրիոնցի պատանու տարածման ու հավաքագրման իրավունքների վերավաճառքի հնարքի նույնիսկ հընգակի կրկնությունը կհասցներ նրան, որ ամեն մի ամերիկյան ընտանիքում կհայտնվեր «Կոսկոտի» մեկ շրջիկ գործակալ:

Ութ ամիս անց Տարների ջտաբ-բնակարանում արդեն փողի հոտ եկավ, իսկ որոշ ժամանակ անց՝ օծանելիքի: Թեթև շահույթի սիրահարներից հավաքագրողների դուրս կորզած դոլլարներով Տարները Օռլանդոյում (նահանգ Ֆլորիդա) և Սան-Խուանում (Պուերտո-Ռիկո) շպարանյութի առաջնակարգ ձեռնարկություններ կառուցեց, որոնք ջրաքիսի վերամշակված ճարպից պատրաստված օծանելիքներ էին արտադրում: (Հիմա ձեզ համար հասկանալի՞ է Տար-

[1] «Ռոլլս-ռոյս»— թանկարժեք ավտոմեքենայի մակնիշ:

[2] Միդաս — հին Փռյուգիայի հեքիաթային հարստության տեր թագավոր (8—7-րդ դդ. մեր թվարկությունից առաջ):



ների մերձավորների սերը մորթե վզկապների նկատմամբ):

Շուտով Գլեն-Նապաստակաշուրթը կոմիկական գործարարությունից անցավ գործնական ակտիվության այլ ոլորտներ, և պտտվեց կարուսելը:

Սակայն ոմանց համար դա կարուսել էր, իսկ ոմանց՝ ջրաղացքար: Տարների կայսրությունն աճում է, մարդկային ճակատագրեր աղալով:

### «ԻՆՁ ԱՅԼԵՎՍ ՈՉ ՈՔ ՉԻ ԿԱՐՈՂ ԿԱՆԳՆԵՑՆԵԼ»

Գլեն Տարներին անվանում են Միացյալ Նահանգների ամենաատելի մարդը: Դա նրա համար բոլորովին միևնույն է:

Նյու-Յորք նահանգի գլխավոր դատախազ Լեֆկովիցը հայտարարել է, որ «տարներյան գործառնությունները թակարդներ են, որ դրվում են ցածր եկամուտ ունեցող, աղքատ, սևամորթ, գոյության աղբյուրների խիստ կարիք ունեցող մարդկանց համար»:

Քսանվեց նահանգում դատախազները հետաքննության են ենթարկում «Շպարանյութի ապագայի միջմոլորակային համայնքների» գործունեությունը, տասնինը նահանգում դրանք օրենքից դուրս են հայտարարված:

Բայց, կրկնում եմ, Գլեն Տարների համար դա բոլորովին միևնույն է: Չէ՞ որ Ամերիկայում չկա այնպիսի դատարան, որ դատի հաղթողներին: Իսկ Գլեն-Նապաստակաշուրթը հաղթող է: «Ինձ արդեն ոչ ոք ու ոչինչ չի կարող կանգնեցնել: Ես չափազանց կոբեղ եմ դարձել»,— ասում է անսանձելի Տարները:— «Վաղ թե ուշ ես կդառնամ Միացյալ Նահանգների պրեզիդենտ,— պնդարարում է Տարները:— Թողեք ինձ հեռուստատեսություն՝ ընտրություններին նախորդող գիշերը, թողեք ինձ խոսել Ամերիկայի ժողովրդի հետ երես առ երես, առանց միջնորդի, և հետևյալ օրը ես կմտնեմ Սպիտակ տուն»:

Կարևոր չէ, թե որքան մարդ է նա կործանել, կարևոր է, որ նա հաջողության է հասել:

Ամերիկացու ողբերգությունն, ի միջի այլոց, նրանում է, որ նա այսպես ասած «ամերիկյան» երազանքի ետևում չի տեսնում սոցիալական անարդարությունը: Չէ՞ որ կարողանում են ուրիշները վեր, նույնիսկ ամենավերը, բարձրանալ: Հենց, օրինակ, նույն ինքը Գլեն-Նապաստակաշուրթը, աղքատ ագարակատիրոջ տգետ որդին:

Ամերիկացին հավատում է հաջողության, և նրան թվում է, որ իր համար ամեն ինչ հնարավոր է: Այս հավատը արդարացնում է ամեն հանցագործություն հանուն հաջողության:

Եվ Տարները լցնում է ուրիշների գլուխները անհնար երազանքի տեսիլքներով: Դա նրա կոչումն է, ավելին՝ գործարարությունը:



### «ԵԿԵՔ ԻՆՁ ՄՈՏ՝ ՕՌԼԱՆԴՈ»

Գլեն Տարների ձեռնարկատների մեջ կա «Հանդգնիր մեծ լինել» ընկերությունը: Սրա առևտրի առարկան գաղափարներն են:

«Մի՞թե գնողներ կան»,— կհարցնեք դուք: Այն էլ ինչպե՜ս: Մարդիկ պարտքերի մեջ են խրվում, որպեսզի միլիոնատեր դառնան, աղքատության մեջ են ընկնում, որպեսզի հարստանան: Տարներյան «դասընթացները» եսկայական պահանջարկ ունեն: Գնելով դասընթաց երրորդը՝ այն մասին, թե ինչպես միլիոնատեր դառնալ, դուք լրիվ դասընթացի վաճառքի «իրավունք» եք ձեռք բերում ինը հարյուր դոլլար հանձնակատարականով ձեր օգտին: Ունենալով դասընթաց չորրորդը՝ այն մասին, թե ինչպես դառնալ մուլտիմիլիոնատեր, դուք իրավունք եք ստանում երկու հազար դոլլար հանձնակատարականի: Մնում է քիչ բան՝ գտնել նույնպիսի միամիտների, ինչպիսին դուք եք: Իսկ միամիտների պակաս չկա: Ամերիկայում բոլորն էլ ուզում են միլիոնատեր դառնալ:

...Լայների թևի տակ երևացին Օռլանդոյի արվարձանները:

— Սրանք «Կոսկոտի» ձեռնարկություններն են: Սրանց զբաղեցրած տարածության վրա ազատ կարող է տեղավորվել չորս ֆուտբոլային դաշտ: Խնդրում եմ պաշտպանական գոտիները կապել ու գլանակները հանգցնել: Վայրէջք ենք կատարում: Փառք մեծ Տարներին: Շնորհակալություն ուշադրության համար,— ծլվլաց ստյուարդեսսան:

Բետոնուղու վրայով կարմիր գորգ էր տարածվում: Պատվավոր պահակախումբը կազմված էր Օռլանդոյի ամենասիրուն աղջիկներից:

Պատվավոր պահակախմբից կես քայլ առաջ քարացել էր ինքը Գլեն Տարներ-Նապաստակաշուրթը: Տարների հագին իր սովորական հասած նռան գույնի կոստյումն էր:

— Ձեզ ոսկյա հնարավորություն է ընձեռնվել ինձ

իմ իսկական չափերի մեջ տեսնելու,— ժամանածներին դիմեց Տարներն ու ձեռքը պարզեց իր դիմանկարի կողմը, որ փակել էր օդանավակայանի ողջ շենքն ու նրա վրա տարածված երկնքի մի մեծ կտոր: (Այդ դիմանկարը համարվում է «ամենամեծը աշխարհում»: Թերևս այդպես է: Որպեսզի ընթերցողին որոշ պատկերացում տամ նրա չափերի մասին, կասեմ. միայն պոտա շրթունքի երկարությունը դիմանկարի վրա կազմում է մեկուկես մետր):

Հարվարդցիներին (գործարարության հարվարդյան դպրոցի սաներին, «Տրանսկոտ» ձեռնարկատան ավտոբուսներ նստեցրին ու տարան Անսասանելու շտաբ-բնակարանը: Ողջ ճանապարհին Անսասանելին անսասանելի շաղակրատում էր.

— Ես պատրաստվում եմ ներխուժել դեղագործական արդյունաբերություն: Այդ նպատակով ես արդեն հիմնել եմ «Վիտակոտ» ձեռնարկատունը: Նրա արտադրանքի ռեկլամը կլինի «Անվնասության լիակատար երաշխիք: Ուզում եք ընդունեք, չեք ուզում՝ մի ընդունեք»: Հրաշալի է, ճիշտ չէ՞:

Վերջապես «Տրանսկոտ» ձեռնարկատան ավտոբուսները կանգ առան «Կոսկոտ» ձեռնարկատան շքամուտքի առաջ: Հարվարդյան քառասուն ավարտականներ մուտք գործեցին «Հանդգնիր մեծ լինել» կախարդական ձեռնարկությունների արտադրանքի ցուցահանդեսը: Հետո թափանցեցին էլեկտրոնային ուղեղի ղրոտները՝ հաշվիչ մեքենաներով ու պատճենավորող սարքավորումներով լեփ-լեցուն ընդարձակ մի դահլիճ: Վերևում գտնվող ինչ-որ տեղից հնչում էր նյարդային բիթլ-երաժշտությունը: Անցան փոխնախագահների ու դիրեկտորների մեղրահացի նման աշխատասենյակներն ու ընկան մի մեծ ռոտոնդ՝ կլոր դահլիճ, որի մեջտեղում խրված էր մարմարե շատրվաններով երիզված ոլորապտույտ սանդուղքը: Այն տանում էր Գլեն Տարների անձնական շքասենյակը:

Այստեղ հարվարդյան հոռետեսներին քաղաքավարի խուսափողության ենթարկեցին: Ղեկավարում էր այդ արարողությունը Կլարկ Ստոունը՝ «Կոսկոտի» անվտանգության ծառայության պետն ու Նապաստակաջուրթի թիկնապահը:

— Իմ «Գանգում»[1] երեսուներկու կտրիճ կա: Բոլորը՝ ընտիր: Նրանց կողքով ճանճն էլ չի կարող անցնել: Իսկ տեխնիկա՛ն: Ծածուկ ունկնդրման ոչ մի սարքավորում չի մնա առանց բացահայտվելու:

Բարձր կարգի տագնապի դեպքում միստր Տարները կոճակի մի սեղմումով բացարձակ հերմետիկացիայի է ենթարկում իր շտաբ-բնակարանը, կտրելով այն արտաքին աշխարհից:

Հարվարդցիների այցելությունը, այն էլ բոսի անձնական հրավերով, «բարձր կարգի տագնապ» չէր ներկայացնում: Նրանց ներս թողին սրբության սրբոցը: Նրանց առջև բացվեց մի ամբողջ սենեկաշարք՝ հոյաշեն կրակարանով մարմարե հյուրասենյակը, ծոպափայտերով, կշռաքարերով ու գանտելներով սարքավորված մարմնամարզական դահլիճը, միայն մեկ բազկաթոռով փարսավիրանոցը, ննջասենյակը, որտեղից կարելի էր անցնել լողավազան ու ֆիննական բաղնիք: Բոլոր սենյակներում կախված էին Տարների ամերիկյան դրոշով ու արծիվ պատկերող պինանիշով պարզարված հսկայական դիմանկարները:

Գրադարանից հյուրերին նորից բերեցին ռոտոնդ: Նրանց նստեցրին մարմարե շատրվանի շուրջը, իսկ վերից ոլորապտույտ սանդուղքով սկսվեց տարներյան խմբի՝ կյանքի տերեր դարձած նախկին ոչնչությունների վայրէջքը: Նրանք հայտնվում էին մեկը մյուսի ետևից: Տարները հերթով ներկայացնում էր նրանց անունը, ազգանունը, պաշտոնն ու եկամուտը: Ենթարկվելով բոսի ձեռքի շարժումին, ջենտլմենները, ժպտալով, անհետանում էին՝ իրենց տեղը պիջելով հաջորդներին:

Հյուրերը շքերթին նայում էին լուռ. Տարների կայսրության հպատակները բուռն ծափահարում էին, ցատկոտում:

— Ֆանտաստի՛կ է: Անհավատալի՛: Ցնցո՛ղ,— գոռում էին նրանք:

Երբ ոլորապտույտ սանդուղքից իջնող թափորն ավարտվեց, Գլեն Տարները թռավ-երկու բազկաթոռի վրա ու, հավասարակշռվելով, սկսեց չափ տալ իր դիրեկտորներից ու փոխ-նախագահներից կազմված երգչախմբին.

— Որո՜տ, որոտ ու կայծա՜կ, հայար սատանա՛:
Մենք սերունդն ենք տարներյան:

Հետո «տարներյան սերունդն» սկսեց հեգել Նապաստակաջուրթի անվան առաջին տառերը.

— Գ. Վ. Տ.: Գ. Վ. Տ.: Գ. Վ. Տ.: (Գիմ, Վեվ, Տյուն):

Հարվարդցի հյուրերը աճող զարմանքով էին նայում այս կոլեկտիվ խելացնորությանը: Շուտով զարմանքը փոխարինվեց անհարմարության զգացումով: Հարվարդցիները հանկարծ գիտակցեցին, որ իրենք իրենց ծաղրանմանեցումն են դիտում:

Երբ Տարները, վերջապես, սպառվեց, հանդես եկավ Լի Բեյլին՝ Գլեն Տարների աջ ձեռքը:

Միստր Լի Բեյլին հարվարդցիների համար դասախոսություն կարդաց: Նրա էությունը հանգում էր մասնավոր-սեփականատիրական աշխարհի էլեմենտար մասնիկներին, ինչպես օրինակ՝ բռնված չես, ուրեմն գող չես, եթե չխաբես, չես վաճառի և այլն:

— Մեր ողջ հասարակությունը վերևից ներքև դոպինգի[1] կարիք ունի: Փողը մարդկային տրամա-

[1] Գանգ—ավազակախումբ, հրոսակախումբ:

[1] Դոպինգ—գրգռիչ միջոց: Ձիարշավներից առաջ ներարկում են նժույգներին:

դրությունը բարձրացնող ամբարձիչ է: Փողի նկատմամբ կիրքը մարդկանց համար բարձրագույն իրականության դուռը բացող բանալի է: Երբ մենք, պատռելով մեր կոկորդները, գոռում ենք. «Мmmoonnéy», այդ գոռոցով մենք հայտարարում ենք մեր մասին, մեր գոյության, մեր երազանքների ու ակնկալությունների մասին: Ով փողի մասին չի մտածում, չի մտածում ընդհանրապես: Փողը նպատակ է ու միջոց, փողը սկիզբ է ու վերջ: «Мmmoonnéy...»

Եկրափակիչ խնջույքի ժամանակ հարվարդցիները ցանկացան տեսնել հաշվապահական գրքերը:

— Դուք փաստե՞ր եք ուզում: Ես դրանք չունեմ,—կինաթափող անկեղծությամբ ազդարարեց Տարները:— Ես կայսրություն ստեղծած հանճար եմ, իսկ ղեկավարում են այն փորձագետները: Փաստերն ու թվերը նրանց գործն է: Եթե նրանք գաղտնապահ են, ուրեմն այդպես էլ պետք է: Նրանք ավելի լավ են տեսնում: Իսկ ես տեսնում եմ այլ, ավելի հեռավոր հորիզոններ...

Անուշեղեններից հետո դահլիճում լույսը մարեց: Սկսվեց «Միստր Էնտուզիազմ» կինոնկարի ցուցադրումը, որը պատկերում էր Գլեն Տարների բարձրացումը ցեխից մինչև շեյխ: Էկրանի վրա խոշոր պլանով երևում էր Անսանձելին: Նա շարունակ լողանում էր փառքի շողերում, Ատլանտյան օվկիանոսի ջրերում, ոսկում: Լոգանքների միջոցներին Անսանձելին պառնում էր խեխագարի պես: Զբոսանավերով, ինքնաթիռներով, ավտոմեքենաներով: Զբոսանավերը հոյակապ էին, ավտոմեքենաները՝ գերազանց, ինքնաթիռները՝ անձնական: Շքեղությունը աչք էր ծակում, հանդիսատեսներին նետում նախանձի, ագահության, շահամոլության գիրկը: Եվ սոսկալի ուզում էին կարողանալ մեծ լինել, ուզում էին պոպիտիվ վերաբերվել սեփական կյանքին՝ ու նեգատիվ՝ բոլոր մյուսներին:

Երբեմն միստր Էնտուզիազմը, նույն ինքը Անսանձելին, ինքը Նապաստակաշուրթը, լցնում էր ամբողջ էկրանը ու ձեռքերը պարզելով հանդիսասրահի, ազդարարում.

— Օ՜, որքա՜ն եմ ես ուզում ձեռքի մի հպումով ազատել ձեզ ձեր սեփական ուժերի նկատմամբ ունեցած անվստահությունից: Լսեցե՛ք ինձ: Հետևեցե՛ք ինձ: Եկե՛ք իմ ետևից: Եթե ես ձեզ մի ձուկ տամ, դուք կուշտ կլինեք մի օր, իսկ եթե ես ձեզ ձուկ բռնել սովորեցնեմ, դուք կուշտ կլինեք ձեր ողջ կյանքի ընթացքում: Փրկությունը հաջողության մեջ է: Հաջողությունը՝ հավատի...

Դա գիշատիչ շնաձկան դաս էր:

Գլեն Տարները եկել էր օդանավակայան ճանապարհելու հարվարդցիներին: Վառվեցին լուսարձակներն ու միկրոֆոնին մոտեցավ «ինքը»:

— Հասել է հրաժեշտի ժամը,— գոռգոռաց նա:— Ձեզնից շատերը, իհարկե, համոզված են, որ ես ձեռնարկեցի այս ճանապարհորդությունը ռեկլամի ու ինքնառեկլամի համար: Ուզում եք հավատացեք, ուզում եք ոչ, բայց իմ մտքովն անգամ նման բան չի անցել: Բերել եմ ես ձեզ միայն իմ սեփական հաճույքի համար, որպեսզի ցույց տամ ու ապացուցեմ ձեզ իմ գործարարության էֆեկտիվությունը:

Սկսվեց հրաժեշտի արարողությունը: Հարվարդցիներին նվերներ մատուցվեցին, ձայնապնակներ Տարների աֆորիզմների ձայնագրություններով՝ «Ինքնակատարելագործումը սահման չունի»:

⁂

Գլեն Տարներ-Նապաստակաշուրթը միայն թվում է կապիտալիզմի աշխարհի ծաղրանկար: Իսկապես նա գիշատիչ հասարակության ինքնանկարն է, որի կուռքն է փողը:

**Նյու-Յորք—Մոսկվա**

*Թարգմ. ԼԻԼԻ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ*

„Пионер“ № 2, 1976 г.





# ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՀԱՎԱՔ



ՆԿԱՐՈՒՄ.— Ղուկասյանի շրջանի երթի առաջավորներ Ռուզաննան, Գայանեն, Շողիկը, Արթուրը, Համլիկը, Սուսաննան ու Կարինեն զրուցում են հավաքից ստացած տպավորությունների շուրջ։

Երեք օր շարունակ Երևանում տեղի էր ունենում հանրապետության պիոներական 14-րդ հավաքը։ Քաղաքների ու շրջանների պատվիրակները զեկույցներ էին հանձնում «Կոմունիստներից օրինակ ենք վերցնում» երթի բոլոր երթուղիների և տարբեր շարժումների գծով կատարած լավագույն գործերի, նախաձեռնությունների մասին։ Հավաքի մասնակիցները Երևանում, Ծաղկաձորում և Հանրավանում հանդիպումներ ունեցան ՍՄԿԿ 25-րդ համագումարի պատգամավորների, արտադրության առաջավորների, պատերազմի վետերանների և նանաչված մարզիկների հետ։ Բոլոր պատվիրակների համար այդ հավաքը հանդիսացավ փորձի փոխանակման, նոր աշխատանքների կազմակերպման յուրօրինակ դպրոց։

*Լուսանկարը՝ ԶԱՎԵՆ ԲՇՏԻԿՅԱՆԻ*

---

## Գ Ի Ր Ք

*ՎԱԶԳԵՆ ԱՌԱՔԵԼՅԱՆ*

Երբ քեզ չեմ կարդում,
Թախծում ես քո մեջ,
Ամառ ու աշուն
Ննջում են քո մեջ,

Ձմեռ ու գարուն,
Երազներ պես-պես,
Եվ միրգ ու ծաղիկ
Փակվում են քո մեջ։

Գայլ ու նապաստակ,
Գետակ ու քամի,
Իրար ձայն տալով՝
Թաքնվում քո մեջ...
Երբ որ բացում եմ
Թերթերդ մաքուր,
Ճնճղուկ ու թիթեռ
Ծնչում են քո մեջ։
Հեքիաթների պես
Ինձ իրենց թևին
Աշխարհից-աշխարհ
Տանում ես քո մեջ։

*Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*

# ԱՄՊԵՐԻ ԱՆՈՒՆԸ ԾԱՆՈԹ Է

ԱՐՏԱԿ ՈՍԿԱՆՅԱՆ

Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

Իհարկե, Ամպերի ստեղծած տեսությանը կասկածել կարող էին բոլորը, բայց որ փորձին չէին հավատում՝ դա արդեն չափազանց էր: Լապլասը տեղյակ էր Էրստեդի հայտնի փորձերին, որոնք հաստատել էին մի կարևոր ճշմարտություն. այն է՝ շարժվող լիցքի շուրջը, բացի էլեկտրական դաշտից, առաջանում է նաև մագնիսական դաշտ: Էրստեդը հոսանքակիր հաղորդիչի շուրջը առաջացած մագնիսական դաշտի գոյությունը կապում էր հենց իր՝ հաղորդիչի հետ, երբ հոսանք է անցնում՝ հաղորդիչը մագնիսանում է: Մինչդեռ Ամպերը հաստատեց, որ ոչ թե հաղորդիչն է մագնիսանում, այլ պարզապես նրա միջով անցնող հոսանքն է առաջացնում այդ մագնիսական դաշտը: Ամպերի այս վերջին հայտնագործությունը վեր էր բոլոր սպասելիքներից:



Էրստեդի կատարած փորձերի ցուցադրմամբ Արագոն հանդես եկավ նաև Փարիզի գիտությունների ակադեմիայում: Քառասունհինգամյա Ամպերը ներկա էր այդ «արարողությանը»: Եվ պարզ է, որ այնքան էլ համբերատար չկարողացավ դիտել այդ փորձերը: Նրա միտքը չէր ենթարկվում ուղեղին. ժամ առաջ ուզում էր դուրս նետվել ակադեմիայից, որպեսզի Ֆոսե-Սեն-Վիկտոր փողոցի վրա գտնվող իր տանը միայնության մեջ տրվի իր խոհերին:

Բայց նախ նրան պետք էր իր սեփական ձեռքերով կրկնել Էրստեդի փորձերը: Սա էր, թերևս, նրա անհամբերության պատճառը:

Նա չիմացավ, թե ինչպես հայտնվեց փականագործի արհեստանոցում: Վերջինս, երբ տեսավ գլուխը կորցրած Ամպերին, ամեն ինչ դադարեցրեց և զբաղվեց նրա պատվերների իրականացմամբ: Իսկ ի՞նչ էր պատվիրում Ամպերը՝ փորձերի համար անհրաժեշտ լաբորատոր սեղան, շտատիվներ, հաղորդալարեր և այլն: Որպես հոսանքի աղբյուր նրա տրամադրության տակ էր նաև վոլտյան սյունը:

Սկիզբը՝ № 9-ում

Նա կողմնացույցը մոտեցնում էր մերթ վոլտյան սյունին, մերթ հաղորդալարերին և երկու դեպքում էլ ականատես լինում կողմնացույցի սլաքի խոտորմանը: Բայց երբ բացում էր շղթան, սլաքը չէր խոտորվում: Ուրեմն կողմնացույցի սլաքը խոտորվում է միայն փակ շղթայի առկայությամբ. նշանակում է մագնիսական երևույթներն ուղեկցում են միայն փակ շղթային:

Մինչ այդ հայտնի էր էլեկտրականության, այսպես կոչված, երկու տեսակ. առաջինը՝ ստատիկ էլեկտրականությունը, որը ստացվում էր Օտտո ֆոն Գերիկի մեքենայով և երկրորդը՝ վոլտյան-գալվանական էլեկտրականությունը, որը ստացվում էր վոլտյան սյունից: Մագնիսականությունը հատուկ էր միայն հոսանքի երկրորդ տեսակին, ընդ որում, երբ շղթան փակ էր, այսինքն՝ երբ հոսանքն անցնում էր աղբյուրի մի բևեռից մյուսը: Բայց, երբ շղթան բաց էր, վոլտյան սյունը ցուցաբերում էր «առաջին» էլեկտրականության հատկություններ: Նրա բևեռներում կուտակված լիցքերը կարող էին պարպվել որոշ հեռավորությունից, կարող էին ձգել թեթև ու դյուրաշարժ մարմիններ: Լիցքերը շարժվում էին այն դեպքում, երբ շղթան փակ էր, այսինքն՝ երբ հոսանքի առաջին տեսակը փոխարկվում էր երկրորդ տեսակի:

Ամպերը դատողությունների այս շղթայով չբավարարվեց. նրան հետաքրքրում էր այն, թե այդ ազդեցությունը ինչի՞ց էր կախված, այսինքն՝ որ դեպքում նա կլինի մեծ և որ դեպքում՝ փոքր: Դրա համար Ամպերին անհրաժեշտ եղավ աշխարհում առաջինը օգտագործելու «հոսանքի ուժ» հասկացությունը: Ամպերը գտավ, որ այդ ազդեցությունը առաջին հերթին կախված է հոսանքի ուժի մեծությունից, ընդ որում հոսանքի ուժ ասելով՝ նա հասկանում էր ժամանակի միավորի (ասենք, մեկ վայր-

## ԱՆԳԱՄ ԽՈՀԱՐԱՐՆԵՐԻՆ



կյանքի) ընթացքում հաղորդիչի ընդլայնական կտրվածքով անցնող լիցքերի քանակությունը:

Այնուհետև Ամպերը հանգեց մեկ այլ վարկածի. բոլոր պարուրաձև հաղորդալարերը և առանձին գալարները իրենց պահում են այնպես, ինչպես մագնիսները:

Ամպերի այդ ենթադրության մասին տեղյակ էին ակադեմիայում և կարծում էին, թե դա սոսկ ենթադրություն էլ կմնա: Ծայր առած բամբասանքը հունից չհանեց նրան:

Չորս օր անց Ամպերը պետք է ֆիզիկոսների առաջ հաստատեր իր ենթադրությունը: Ընդամենը չորս օր. կարծես թե մոտ էր խայտառակվելու պահը: Նա դարձել էր մռահոգ և դյուրագրգիռ: Եվ ահա փայլեց հույսի կայծը. որտեղից-որտեղ նա հանկարծ հիշեց, որ համալսարանի համար բոլորովին վերջերս պատրաստվել է նոր, մեծ և հզոր վոլտյան սյուն: Իսկապես, այն դրված էր համալսարանի լաբորատորիայում: Ամպերը խնդրեց իրեն տրամադրել այն, բայց ղեկավարությունը չհամաձայնեց: Նրանք կարծում էին, թե «կասկածելի փորձերը» շարքից կհանեն առանց այն էլ իրենց վրա խիստ թանկ նստած գործիքը:




Ամպերը գտավ ելքը. համալսարանի ներկայացուցչի ներկայությամբ վարպետներին պատվիրեց ճիշտ նույն չափի և հզորության սյուն և խնդրեց անմիջապես իրեն տրամադրել համալսարանում գտնվածը, որի փչացման դեպքում, նրանք լաբորատորիա կարող էին տանել այդ նոր սյունը: Միայն այդ պայմանով նա իր բնակարանը տեղափոխեց համալսարանին պատկանող վոլտյան սյունը:

Նոր սյունը հոյակապ էր: Շղթայի մեջ միացրած երկու պարույրները իրար վանում և ձգում էին ճիշտ այնպես, ինչպես մինչ այդ հայտնի մագնիսները:

Երբ չորս օր անց Ամպերը բարձրացավ ամբիոն, ամեն ինչ կարգին էր. նա ակադեմիայում կարող էր հաստատել այն, ինչ ենթադրել էր: Փորձը վերջացնելուց հետո, Ամպերն ասաց. «Ես տեղյակ պահեցի ձեզ երկու էլեկտրական հոսանքների ձգողության և վանողության մասին՝ առանց որևէ մագնիսի մասնակցության, ինչպես նաև երկու պարուրաձև հաղորդիչների ձգողության և վանողության փաստի մասին: Կրկնեցի իմ փորձերը այս նիստի ընթացքում»:

Ինչպես տեսնում ենք, մեջբերումը կատարված է նիստի արձանագրությունից և կրում է խիստ պաշտոնական բնույթ:

Ամպերի աշխատանքները դրանով չսպառվեցին: Նա նորանոր փորձեր էր դնում և արդյունքների մասին հետևողականորեն հաղորդում էր ակադեմիա: Ի վերջո նա ի մի բերեց իր փորձերի արդյունքները բազմաթիվ հոդվածներում և հրատարակեց: Նրա աշխատությունները հիմք դրին մի այնպիսի նոր գիտության, ինչպիսին է ժամանակակից էլեկտրամագնիսականությունը:

Ամպերը բախտավոր աստղի տակ ծնվածներից չէր. կենդանության օրոք նա չհասավ այն փառքին, որին արժանի էր: Երբ նա դեռ կենդանի էր, ամբողջ Ֆրանսիան գիտեր նրա որդու՝ Ժան-Ժակ Ամպերի անունը, իսկ իրեն գիտեին միայն ֆիզիկոսները: Որդին զբաղվում էր գրականությամբ, և նրա հովանավորը՝ երբեմնի նշանավոր Շատոբրիանը կարծես թե այն ժամանակների առումով ճիշտ էր, որ գրել է. «Բանաստեղծը մի քանի ոտանավորներով անգամ անմահ է սերունդների սրտում, իսկ գիտնականի անունը մոռացվում է հենց մահվան օրը»:

Եթե այսօր կենդանի լիներ Շատոբրիանը, երևի հակառակ ծայրահեղության մեջ կընկներ, քանի որ Ամպերի որդու անունը ներկայումս անհայտ է նույնիսկ գրականագետներին, իսկ Ամպերի անունը ծանոթ է անգամ խոհարարներին:






ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
(կենսաբանական գիտությունների դոկտոր)

Ներկայումս, երբ երկրագնդի վրա գայլերի թիվը խիստ նվազել է, իսկ մի շարք երկրներում այդ կենդանիները լրիվ անհետացել են, շա՜տ գիտնականներ առաջարկում են պահպանության տակ վերցնել դրանց:

Կենդանաբանները գտնում են, որ գայլերը բոլորովին էլ կենդանական աշխարհի ամենադաժան, ամենաագրեսիվ, ամենակատաղի և ամենաանագուտ ներկայացուցիչները չեն: Նրանց կարծիքով գայլը չափազանց խեղճ, վախկոտ, նվիրված և ուշադիր կենդանի է: Գայլը դառնում է կատաղի ու անողոք միայն այն դեպքում, երբ երկար ժամանակ կեր չգտնելով՝ խելագարվում է քաղցից:

Հայտնի են դեպքեր, երբ գայլը հանդիպելով անտառում մոլորված փոքր երեխայի, ոչ միայն չի հոշոտել նրան, այլև տարել է իր որջը, խնամել, կերակրել և պահել իր ձագերի հետ: Մինչև այժմ 53 այդպիսի դեպք է հայտնի գիտությանը: Այնպես որ, իզուր չի գրվել «Մաուգլի» հեքիաթը:

Իսկ գայլը բնության մեջ որևիցե օգտակար դեր խաղո՞ւմ է:

Պարզվում է, որ՝ այո՛: Անընդհատ հետապնդելով խոտակեր վայրի կենդանիների հոտերը, գայլերը բռնում և հոշոտում են այն կենդանիներին, որոնք թույլ են, հիվանդ և մշտապես ետ են մնում հոտից: Այդպիսով գայլը ավնվացնում է վայրի կենդանիներին, քանի որ ողջ են մնում և սերունդ են տալիս միայն նրանք, ովքեր ավելի կենսունակ են, առողջ և ուժեղ:

Ահա թե ինչու, ներկայումս մի շարք երկրներ այլ վայրերից գայլեր են ներմուծում:

Առանձնապես մեծ պաշտպանության կարիք է զգում Թասմանիա կղզում հանդիպող պարկավոր գայլը, որն արդեն խպառ անհետանում է երկրի երեսից: Դա շագանակագույն կենդանի է, մարմնի վրա 13—19 սևագորշավուն գծեր ունի: Որսի է դուրս գալիս գիշերը: Նոր ծնված ձագերին երեք ամիս պահում է փորի տակ գտնվող պայուսակում, մինչև որ նրանք կարողանում են ինքնուրույն սնունդ հայթայթել:

1824 թվականից, երբ Թասմանիա կղզին բնակեցվեց, անասնապահները անողոք պատերազմ սկսեցին պարկավոր գայլերի դեմ, ամենուրեք ոչնչացնելով դրանց: Միայն 1938 թվականին, երբ այդ կենդանին



համարյա լրիվ ոչնչացել էր, պետությունը իր պաշտպանության տակ վերցրեց նրան: Ներկայումս տեղեկություններ են ստացվում, որ հատուկենտ պարկավոր գայլեր են հանդիպում Թասմանիայի անմարդաբնակ վայրերում:

Նկ. ՎԱՂԱՐՇԱԿ ԱՐԱՄՅԱՆԻ

---

*Ինչպե՞ս արգելել աշակերտներին սահել աստիճանների բազրիքներով: Այս հարցը հուզել և հուզում է ծնողների ու մանկավարժների բազմաթիվ սերունդների: Սակայն պարզվում է, որ կարելի է բոլորովին այլ տեսանկյունից մոտենալ հարցին: Իսկ ինչո՞ւ անպայման արգելել: Լավ չի՞ լինի, եթե... օժանդակենք: Այս մտքին (երևի ճարահատյա՞լ...) հանգեց մի ամերիկացի ճարտարապետ, որը Ցինցինատի քաղաքում նախադպրոցական դպրոց նախագծելու պատվեր էր ստացել: Նրա նախագծած դպրոցում աստիճանների մի մասը, ինչպես հարկն է, ունեն բազրիքներ, սակայն... աստիճաններ բոլորովին չկան: Աստիճաններին փոխարինում են կորեկ, թեք հարթությունները, դրանց վրայով աշակերտները, որոնք դեռ դուրս չեն եկել «կրտսեր դպրոցական տարիքից», մեծագույն հաճույքով վայր են սահում:*



*Տասներորդ հնգամյակի երթուղիներով*

# ԷԼԵԿՏՐԱԿԱՆ ՇՏԱՊ ՕԳՆՈՒԹՅՈՒՆ

Երկրի հեռավոր ու դժվարամատչելի վայրերն էլեկտրականությամբ ապահովելու համար սովետական հիդրոշինարարներն ու էներգետիկները ստեղծել են գազատուրբինային լողացող «Հյուսիսափայլ» էլեկտրակայաններ:

«Հյուսիսափայլն» ի վիճակի է գետերով, լճերով և ծովերով հասնել մեր երկրի ամենահեռավոր անկյունները: Աչդան, Լենա, Կոլիմա և Յանա գետերը, Չուկոտյան, Բերինգյան և Օխոտյան ծովերն ու նրանց հարակից շրջանները կլինեն այն վայրերը, ուր առաջին հերթին կմեկնեն լողացող էլեկտրակայանները:

Յուրաքանչյուր լողացող կայան ունի 12.000 կիլովատ հզորությամբ երկու գազային տուրբիններ, որոնց թիակները տաք գազի հզոր շիթի ազդեցությամբ պտտվում են և արտադրում էլեկտրաէներգիա: Գազն այնուհետև օգտագործվում է երկու հսկայական կաթսաների ջուրը տաքացնելու համար: Տաք ջրի այս քանակությունը կարող է ջերմությամբ ապահովել 20000 բնակչություն ունեցող մի ամբողջ քաղաք, այնպես որ «Հյուսիսափայլը» ոչ միայն էլեկտրական, այլ նաև ջերմային օգնություն է:

Նավիրանի հատուկ կառուցվածքն հնարավորություն է ընձեռում էլեկտրակայանին և սպասարկող անձնակազմին (36 մարդ) աշխատել նույնիսկ մինչև —65° սառնամանիքի տակ:

Լողացող էլեկտրակայանները խնայողական են, շահավետ և օգտակար:

Տասներորդ հնգամյակում նախատեսվում է շահագործման հանձնել այդպիսի ևս չորս էլեկտրակայաններ, պլանավորված է բարձրացնել «Հյուսիսափայլ» արտադրող Տյումենյան նավաշինարանի թողունակությունը:



# ՋՎՈՂ ՏԵՐԵՎԸ

*ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ*

Խելքը տվեց մի տերև
Գիժ քամու խելքին.
— Սավառնո՜ւմ եմ քամու հետ,—
Կանչում է, ճչում,—
Կանցնեմ դաշտեր, սար ու գետ,
Թռչո՜ւն եմ, թռչո՜ւն...
Նոր երկրներ կհասնեմ
Ծաղկալի ու տաք,
Այնտեղ կրկին կյանք կառնեմ,
Նոր արևի տակ...
...Մեկ էլ քամին դադարեց,
Տերևն ընկավ ցած,
Ջրափոսի մեջ սուզվեց՝
Թռիչքն ավարտվեց:



*«Պիոների» փոստից*

# ՈՐՈՇԵՑԻ ԴԱՌՆԱԼ ՈՒՍՈՒՑԻՉ

Սիրելի՛ խմբագրություն. մի տարի հետո ավարտելու եմ դպրոցը և մինչև այս պահը հաստատ չէի որոշել ինչ դառնալ:

Նստած կարդում էի «Պիոներ» ամսագրի 4-րդ համարը: Մեծ տպավորություն թողեց ինձ վրա Յուրի Գագարինին նվիրված հոդվածը, մանավանդ Գագարինի հայտնած այն միտքը, թե Իվանովը տիեզերագնաց չի դառնա, որովհետև չի փայլում իր ազնվությամբ:

Այնուհետև հայացքս երկար կանգ առավ ամսագրի առաջին էջի վրա. այնտեղից հարցական հայացքով ինձ էր նայում Վ. Ի. Լենինը ու, ասես, ասում.

— Իսկ դո՞ւ, իսկ դո՞ւ, աղջի՛կս, ի՞նչ կդառնաս:

Ես զարմանքից ապշել էի: Նկարն ինձ վրա ցնցող ազդեցություն գործեց: Ես Վ. Ի. Լենինի նկարի առաջ երդվեցի դառնալ ուսուցիչ, դառնալ բարու և լավի սերմնացան, երեխաների ջինջ հոգում ապագայի վառ երազներ արթնացնել:

*ՍՈՒՍԱՆՆԱ ՉԱԼԻԿՅԱՆ*

*Լենինականի № 18 դպրոցի 10-րդ դաս. աշ.*

# ԶՈՐԱՑԱՆ ԵՎ ՀԶՈՐԱՑԱՆ

*ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆ*

Հնուց ի վեր դեմքով խոհուն
Լեռն այս դարձյալ մռայլ ծերուկ.
Գլխին՝ գդակ քուլա ամպեր,
Քունքերն էլ՝ ճերմակահեր,
Իսկ խենթ գետակ-վտակները՝
Խելոք պապի խև թոռները,
Վազում էին ցախ ու ցրիվ,
Միշտ իրարից խռով-խռիվ,
Գնում էին դաշտեր հատում,
Կորչում էին անապատում:
Երկա՜ր, երկա՜ր լեռը խորհեց
Ու թոռներին պատգամ տվեց.
— Այսպես դուք ուր էլ որ գնաք,
Ժամփի կեսին կչորանաք,
Դուք իրարից դժգոհ, խռով,
Ինչ էլ անեք, չե՜ք հասնի ծով:—
Թե ուզում եք լինել հզոր,
Ճերմակաբաշ զորեղ ու խոր,
Իրար սիրեք, մեկտեղ եղեք,
Որ քարափ ու քարեր ճեղքեք:
...Դե լավ էր, որ վտակները՝
Խելոք պապի խև թոռները,
Իրենց պապի խրատն առան,
Իրար թև ու թիկունք դառան:
Ու զորացա՜ծ, հզորացա՜ծ,
Անցնելով բյուր
Լեռ ու անդունդ,
Հասան հեռու ծովը կապույտ:

*ՆԿ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*

Լույս է տեսնում 1925 թվականից

№ 10 հոկտեմբեր 1976 թ.



# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*

*ՆԿ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ*



«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15:
Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96

ՎՖ 06753: Պատվեր 1641: Տպաքանակ՝ 73906: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 22/X 1976 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղրապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:





ԳԻՆԸ 10 Կ. ԻՆԴԵՔՍ 77806



ՆՈՒՆԵ ՂԱՍՈՒՄՅԱՆ
Չարենցավան, 5-րդ դաս. աշ.



ՇՈՒՇԻԿ ԼԵՎՈՆՅԱՆ, 10 տ.
Օշական



ՎԱՀԱԳՆ ԳԱԲՐԻԵԼՅԱՆ
Երևանի 158-րդ դպր. 6-րդ դաս. աշ.



ՆԻՆԱ ՆԵՐՍԻՍՅԱՆ 12 տ
Ջերմուկ

ՎԱՐՇԱՄ ԳՐԻԳՈՐՅԱՆ, 7 տ.
Քաջարան



ԳՈՒՐԳԵՆ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ, 12 տ.
Վեդի

